# „ԱՎՐՈՐԱ" նավը

ՀԱՄՈ ՍԱՀՅԱՆ　　Նկ. Վ. ԹԵՎԱՆՅԱՆԻ

Լողում է նորից «Ավրորա» նավը
Բալթիականի ջրերի վրա,
Եվ նվիրական կայմերին նրա
Հանգստանում է մրրկահավը։

Լողում է նորից «Ավրորա» նավը
Հողմերին տված կուրծքը վիթխարի,
Լսում են բոլոր ծայրերն աշխարհի՝
Հոկտեմբերի հետ նրա համբավը։

Լողում է նորից «Ավրորա» նավը
Բացած վիմպելներն իր արևազօծ,
Առաջնորդելով խաղաղության՝ հոծ
Նավախմբերի հզոր արշավը։

Նա գալիս է, որ ձեզ ազդարարի
Նոր Հոկտեմբերի բարի համբավը,
Ճանապարհ տվեք, ծովեր աշխարհի,
Լողում է ահա «Ավրորա» նավը։






*Լենինի—Ստալինի գործի պայքարին եղի՛ր պատրաստ*

# № 11

## ՆՈՅԵՄԲԵՐ

1951 Թ. ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹՅԱՆ 23-ՐԴ ՏԱՐԻ

ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԱՄՍԱԳԻՐ ՊԻՈՆԵՐՆԵՐԻ ԵՎ ԴՊՐՈՑԱԿԱՆՆԵՐԻ ՀԱՄԱՐ

«Ավրորա» լեգենդար հածանավի նավամատյանում 1917 թվականին գրված է.

«Հոկտեմբերի քսանհինգին, երեկոյան ինն անց քառասունհինգ րոպեին «Ավրորա» հածանավը Ռազմա-ռևոլյուցիոն կոմիտեի հրամանի համաձայն պայմանական կրակ բացեց Ձմեռային պալատի վրա, որպեսզի ստիպի ժամանակավոր կառավարությանը իշխանությունը Սովետներին հանձնել»։

Նկարիչ Ս. Դուդնիկը պատկերել է Ռազմա-ռևոլյուցիոն կոմիտեի նիստը Սմոլնիում և այդ կոմիտեի ղեկավարներ՝ Վ. Ի. Լենինին ու Ի. Վ. Ստալինին այդ պատմական մոմենտին։ Իր նկարը նա անվանել է «Ավրորայի համազարկը»։

# Գլխավոր հրապարակում

ՅԱ. ՏԱՅՑ

Նկ. Վ. ԹՕՎԱՆՅԱՆԻ

1.

Ես ձեզ կպատմեմ գերմանական մի փոքրիկ քաղաքի մասին։ Պատերազմի վերջում այդ քաղաքը զավթեցին ամերիկացիները, բայց հետո նրանք ստիպված եղան հեռանալ այնտեղից և քաղաք մտան մերոնք։ Քաղաքի բնակիչները հարգանքով դիմավորեցին սովետական զինվորներին։ Նրանք շարվել էին մայթերի երկայնքով և թափահարում էին թաշկինակները, գլխարկները, ծաղիկները...

Զինվորների շարասյունը շրջվեց դեպի գլխավոր հրապարակ։ Այդ ժամանակ հրամանատարը հանկարծ հրաման տվեց.

— Կանգ ա՛ռ։

Շարասյունը կանգ առավ։ Բոլոր սպաներն ու զինվորները ուրախ զարմանքով սկսեցին դիտել բրոնզե մեծ արձանը։

Իհարկե, մարտիկները գերմանական քաղաքներում քիչ արձաններ չէին տեսել. բայց այդ արձանն ուրիշ էր։ Դա Լենինի արձանն էր։

— Խոնարհե՛լ դրոշները,— հրահանգեց հրամանատարը։

Եվ հաղթական դրոշները, որ մարտիկները Ստալինգրադից մինչև Բեռլին էին հասցրել, թեթև շրշյունով խոնարհվեցին բրոնզե արձանի առջև։

Մարտիկների աչքերը չէին կարողանում հեռացնել արձանից։ Ինչպե՞ս է նա ընկել այստեղ, գերմանական այս քաղաքը, ուր հենց վերջերս էլ ֆաշիստներն էին տիրություն անում։

Հրամանատարն սկսեց հարց ու փորձ անել բնակիչներին։ Եվ ահա, թե նրանք ինչ պատմեցին։

2.

Քաղաքում մեծ գործարան կա։ Պատերազմի ժամանակ այդտեղ աշխատում էին ամբողջ Եվրոպայից բերված մարդիկ՝ անգլիացիներ, չեխեր, ֆրանսիացիներ, լեհեր...

Այնտեղ աշխատում էր նաև Վասիլի անունով մի ռուս։ Նրա ազգանունը ոչ ոք չգիտեր, բայց բոլորը գիտեին, որ դա մի խիզախ երիտասարդ է։ Նա քաջաբար կռվել էր ֆաշիստների դեմ, պաշտպանել էր հայրենի գյուղը, բայց պայթած ռումբը նրան ցցմեցրել էր։ Երիտասարդն ուշքի էր եկել գնացքում միայն. ֆաշիստները նրան Գերմանիայի խորքն էին տանում։

«Կփախչեմ,— մտածում էր Վասիլին,— ֆաշիստական գերության մեջ չեմ ապրի»։ Բայց փախչելն անհնարին էր։ Հսկողությունը շատ խիստ էր։

Գերմանացիները գերիներին ուժեղացրած պահակախմբով քշեցին գործարան։

Վասիլիին նշանակեցին բեռնաթափող։ Դեպի գործարան էր ձգվում երկաթգծի մի ճյուղը։ Այդ գծով ամեն օր գալիս էին երկար ապրանքատար գնացքներ, տանկերի, հրանոթների և օդանավերի կտորտանքներով բեռնված։

Ֆաշիստները մետաղով շատ աղքատ էին։ Նրանք հավաքում էին, ինչ որ կարողանում էին, և ուղարկում հնոց՝ վերաձուլման։ Վասիլին նրանց օգնել չէր ուզում և աշխատում էր մի կերպ, ցույց տալու համար։

Մի անգամ նա բեռնաթափում էր մի երկար ապրանքատար վագոն։ Առանց շտապելու նա մերթ բարձրացնում էր պղնձի մի կտոր, որի վրա սվաստիկա կար, մերթ «Մեսսերշմիդտի» մի թև՝ վրան սև խաչ նկարած, մերթ ջարդված մի մոտոր... Նա ուրախանում էր, որ գնացքներն արևելքից շատ ջարդվածք են բերում, ուրեմն մերոնք ֆաշիստներին լավ ջարդ են տալիս։

Հանկարծ Վասիլիին թվաց, թե տեսավ Լենինի դեմքը. ինքն իր աչքերին չհավատաց, բայց երբ ուշադիր նայեց, տեսավ, որ վագոնում, մետաղի կույտի մեջ պառկեցրած է Լենինի արձանը։

Առանձին մի զգացում պատեց Վասիլիին։ Առաջվա ամբողջ ազատ կյանքը

միանգամից պատկերացավ նրա աչքերին։ Սիրտը ճմլվեց, աչքերին արցունքներ երևացին։ Նա չկարողացավ զսպել իրեն. կռացավ ու համբուրեց բրոնզե, ուռուցիկ ու սառը ճակատը։

3.

Վասիլիից ոչ հեռու Անրի անունով մի ֆրանսիացի էր կանգնած։ Վասիլին կամացուկ ձայն տվեց նրան։ Անրին ուշադիր նայեց արձանին և հանկարծ դառնալով դեպի Վասիլին, մի տեսակ, իրեն լեզվով, վերջին վանկը շեշտելով, գորովանքով ասաց.

— Լենի՛ն...

Նա ձեռնոցը թափահարելով կանչեց անգլիացի Ջոնին, որն աշխատում էր ամբարձիչի մոտ։ Անգլիացին նայեց արձանին և նույնպես գորովալից, բայց արդեն իր լեզվով՝ անգլերեն, արտասանեց.

— Լենին...



... Այսպես, և՛ չեխը ճանաչեց Լենինին, և՛ լեհը, և՛ նեգրը...

Ով մոտենում էր վագոնին, Լենինին ճանաչում էր և շշուկով, սիրալիր կրկնում.

— Լենին, Լենին...

Բայց Լենինի արձանին երկար նայել չվիճակվեց։ Գնացքի երկայնքով ավտոմատը ձեռքին, արդեն վազում էր ժամապահն ու գոռում՝

— Շնե՛լլեր (արագ)...

Վասիլին ու նրա ընկերներն սկսեցին վագոնից թափել ամեն տեսակ կտորտանքներ։ Շուտով երևաց ամբողջ արձանը։ Եվ Վասիլին հասկացավ, որ դա Լենինի այն արձաններից մեկն էր, որ առաջ սովետական քաղաքում է կանգնած եղել։ Ֆաշիստները գողերի պես, պատվանդանից իջեցրել էին այդ արձանը ու բերել էին Գերմանիա, որ ուղարկեն հնոց՝ ձուլման։

«Ո՛չ, այդ չի լինի» վճռեց Վասիլին։ Նա նշաններով ընկերներին հասկացրեց՝ «Ձուլելու ուղարկել չի կարելի, հասկանո՞ւմ եք, չի կարելի... Լենի՜նն է»։

Բոլորը՝ թե՛ անգլիացին, թե՛ չեխը, թե՛ ֆրանսիացին, թե՛ լեհը, բոլորն էլ անմիջապես հասկացան Վասիլիին և նրան հետևելով սկսեցին կրկնել՝

— Չի կարելի, Լենին, Լենին...

Հենց որ ժամապահը վազելով հասավ գնացքի վերջին, Անրին ու Ջոնը զգուշությամբ, ամբարձիչի օգնությամբ, արձանը բարձրացրին ու խնամքով իջեցրին սայլակի վրա։ Վասիլին ցած թռավ վագոնի աստիճանից և նույնպես բռնեց սայլակի բռնակից։

Նրանք սայլակը քշեցին հեռու և սկսեցին խորհրդակցել, թե ինչ անեն արձանը։ Բացատրվում էին ոչ այնքան լեզվով, որքան

ձեռքերով։ Այդ ժամանակ նորից վազելով մոտեցավ ժամապահը՝

— Ի՞նչ եք կանգնել, շնե՛լլեր...

Ուրիշ ելք չկար։ Ստիպված եղան սայլակը նորից հրել նեղ գծերով, որոնք ամրացված էին գործարանի ցեմենտե հատակի մեջ։ Գծերը գնում հասնում էին ձուլարանին։

Եվ ահա փոքրիկ անիվներով լայն դռները բացվեցին։ Դռների ետևում, ձուլող մեծ վառարաններում, ղլթղլթում էր ձուլվածքը։ Նրանցից մեկի մոտ կանգնած էր մի ծեր գերմանացի, կապույտ ակնոցները քթին ու կիսամաշ կեպին գլխին։ Դա հնոցապանն էր։ Նա նայեց նրանց կողմն ու բացագանչեց.

— Ի՞նչ եք դանդաղում, բերեք, թե չէ հնոցը պարապ է։

Վասիլին ավելի ամուր սեղմեց սայլակի բռնակը։ «Ապա մի թող հնոցապանը փորձի վերցնել արձանը... Ձեռքիցս չի պրծնի»։ Այստեղ ժամապահներից վախենալու հարկ չկա։ Նրանք այդ ցեխը չեն էլ մտնում, որովհետև այստեղ գերմանացիներ են աշխատում։

— Խլացե՞լ եք, ինչ է,— կրկին գոռաց հնոցապանը։

Կապույտ ակնոցները հանելով, նա մոտեցավ սայլակին։ Գերիները շրջապատեցին նրան։ Ծեր հնոցապանը նայեց սայլակին։

— Սպասեցեք, ո՞վ է սա... Լե՛նին,— զարմացավ ծեր բանվորը։

Նա ձեռքը բարձրացրեց ու հանեց ճմռված, շատ տեղերում վառված գլխարկը։

Հանկարծ նա իրար անցավ.

— Էլ ի՞նչ եք կանգնել։ Քշեք տարեք ետնաբակը, շո՛ւտ, քանի դեռ ավագ վարպետը չի տեսել։ Քանի դեռ գիշեր է, մութ է... շո՛ւտ։

— Շնորհակալություն, բարեկա՛մ,— ռուսերեն ասաց Վասիլին և մյուսների հետ միասին սայլակը հրեց դեպի ետնաբակի ելքը։

Այնտեղ, աննկատ մի անկյունում, ուր ոչ ոք չի լինում, բանվորները գտան մի հարմար տեղ, հարթեցին, խորացրին, արձանը դրեցին ու խնամքով ծածկեցին բրեզենտով, ժանգոտ երկաթալարի կծիկներով ու տախտակներով։

Եվ արձանը մնաց գործարանի բակի այդ գաղտնի տեղում ամբողջ երկու տարի, մինչև պատերազմի վերջը։

Պատերազմը վերջացավ։ Եկավ հաղթանակը, որին այդքան երկար սպասել էին։ Քաղաքում սկսեցին տիրություն անել ամերիկացիները։ Ծեր հնոցապանը երկու ուրիշ բանվորի հետ գնաց քաղաքի ամերիկացի պարետի մոտ և ասաց.

— Մենք քաղաքում կուզենայինք արձան կանգնեցնել։

— Ո՞մ արձանը։

— Լենինի։

— Ի՞նչ...— բարկացավ ամերիկացին,— բոլշևի՞զմ տարածել... Թույլ չեմ տա։

Այդ ժամանակ բոլորը հասկացան, որ գերմանական ֆաշիզմի փոխարեն եկել է ամերիկականը։ Բանվորներն ստիպված եղան նորից թաքցնել արձանը, այս անգամ արդեն՝ ամերիկացիներից։

Երկու ամիս հետո, երբ Վասիլին արդեն հայրենիքում էր, բնակիչներն իմացան, որ քաղաքը սովետական գոտու մեջ է մտնելու։ Բոլորն ուրախացան։

Ծեր հնոցապանն այդ գիշեր քնել չկարողացավ։ Նա գնաց գործարան ու ասաց.

— Ամերիկացիները գնում-կորչում են։ Եկեք արձանը կանգնեցնենք։ Վաղ առավոտյան ռուսները կմտնեն քաղաք և հրապարակում կտեսնեն Լենինի արձանը։

Քիչ ժամանակ էր մնում. ամռան գիշերը կարճ է։ Բայց բանվորներն աշխատանքից չեն վախենում։ Բոլորը միահամուռ գործի անցան։ Եվ կես գիշերին մոտ, քաղաքի հրապարակում, արդեն բարձրացել էր քարե պատվանդանը։ Հետո արձանը բերին ու դրեցին տեղը։

Երբ քաղաքի վրա ծագեց արևը, նա լուսավորեց բարձրահասակ բրոնզե արձանը։ Լենինը, ինչպես կենդանի, կանգնած էր հրապարակում, ձեռքը դեպի նոր օրը պարզած...

Այսպես քաղաքում հայտնվեց Լենինի արձանը։ Հիմա էլ նա այնտեղ է։ Մայիսի մեկին և մյուս մեծ տոներին պիոներները հավաքվում են նրա շուրջը։ Նրանց դիմավո-

րում է ձեր հնոցապանը։ Նա կարդում է նրանց ուղղված նամակը։

«Ազատ Գերմանիայի թանկագին պիոներնե՛ր։ Շնորհավորում եմ ձեր տոնը։ Դուք երևի հաճախ եք հավաքվում Լենինի արձանի շուրջը։ Սիրեցեք Լենինին։ Չէ՞ որ նա պայքարում էր խաղաղության և ժողովուրդների երջանկության համար։ Ձեր Վասիլի»։

Պիոներներն արձանը զարդարում են ծաղիկներով ու դալար ճյուղերով։ Նրանց գլխավերևը կանգնած է Լենինը և բարի, լենինյան ժպիտով նայում է գերմանական հնադարյան քաղաքին...

Թարգմ. Վ. ՏԱԼՅԱՆ



# ՄԱՅԱ



(Հատվածներ վիպակից)

ՌԱՖԱՅԵԼ ԱԹԱՅԱՆ

Նկ. Պ. ՄԱԼԱՅԱՆԻ

## 1. ԴՊՐՈՑՈՒՄ

Կրասնոդոն քաղաքի մոտ, Պերվոմայկա ավանի կենտրոնում, մի փոքրիկ տափարակ կա։ Այնտեղ, երկհարկանի մի շենքում տեղավորված է № 6 միջնակարգ դպրոցը։ Ներս մտնողի ուշադրությունը գրավում է միջանցքում փակցված տախտակը, որի վրա գրված է.

«Այս դպրոցում սովորել են «Երիտասարդ գվարդիայի» անդամներ՝ Անատոլի Պոպովը, Ուլյանա Գրոմովան, Մայա Պեգլիվանովան, Շուրա Բոնդարևան, Վիկտոր Պետրովը, Նինա Գերասիմովան, Լիլյա Իվանիխինան, Նինա Մինաևան, Շուրա Դուբրովինան, Անգելինա Սամոշինան, Անտոնինա Իվանիխինան, Վլադիմիր Ռագոզինը, Գեննադի Լուկաշովը, Վասիլի Բոնդարևը, Անատոլի Նիկոլաևը, Նիկոլայ Ժուկովը»։

Դպրոցը հպարտանում է իր այս սաներով, որոնք հերոսաբար զոհվել են Սովետական Հայրենիքի համար։

Դպրոցին մոտիկ մի ցածրիկ տան մեջ ապրում է արդեն հիսուն տարին անց մի կին, քիչ երկարավուն դեմքով, սևաչյա, սև ու թավ հոնքերով ու սև գանգուր մազերով։ Միջահասակ, համեստ հագնված այդ կինը ուսուցչուհի Պրասկովյա Սուլթանբեյն է։ Նա ավանի դպրոցում ավանդում է իր սիրած առարկան՝ պատմությունը։ Դպրոցում սովորած երիտգվարդիականներից տասնվեցը նրա աշակերտներն են եղել։

Ուսուցչուհին գորովանքով է խոսում իր սաներից ամեն մեկի մասին։

— Այս դպրոցում աշխատելու առաջին օրերին, տասնչորս տարի առաջ, դասամիջոցին ես աշակերտուհիների մեջ տեսա սևաչյա, թխադեմ ու սև մազերով մի աղջկա։

Մյուս օրը, հինգերորդ դասարանում պարապելիս, ես իմացա, որ այդ աղջիկը հայուհի է, Մայա անունով։

Մայան աչքի էր ընկնում իր լավ վարքով ու ջանասիրությամբ։ Միշտ ճշտապահ էր ու պարտաճանաչ։ Նա ուշադրությամբ լըսում էր դասերը և հարցերին ճիշտ ու որոշակի պատասխանում։ Իմ առարկայից միայն «4» ու «5» էր ստանում։

Մայան շատ էր կարդում։

Մի անգամ նա հարցրել էր ուսուցիչներին.

— Տոլստոյի, Դոստոևսկու, Մամին-Սիբիրյակի երկերը ես վերջացրի, հիմա ի՞նչ խորհուրդ կտաք կարդալ։

Մեկն ասել էր.

— Պուշկին, Լերմոնտով, Նեկրասով։

Մայան ժպտալով պատասխանել էր։

— Պուշկինի, Լերմոնտովի, Նեկրասովի,

Նիկիտինի գրվածքները ես գրեթե անգիր գիտեմ...

Լավ սովորելու, կարգապահության և եռանդուն հասարակական աշխատանքի համար Մայան մի քանի անգամ դպրոցից նըվերներ էր ստացել։

Նրան հաճախ կարելի էր տեսնել երրորդ դասարանի պիոներների շրջանում, որտեղ նա ջոկատավար էր։ Նա վազվզում, խաղում էր երեխաների հետ, կամ թե նրանց համար ամսագրից հետաքրքիր պատմություններ կարդում։

Ես հիշում եմ 1941 թվականի աշնանը կայացած մի կոմերիտական ժողով։ Սեղանի մոտ կանգնած է դպրոցի կոմերիտական կազմակերպության քարտուղարը՝ Մայան, խրատում է ժողովականներից մեկին։

— Դու պատկերացնո՞ւմ ես, թե կոմերիտականի համար ինչ է նշանակում վատ սովորել դպրոցում։ Այդ միևնույնն է, թե



գործարանում պլանը չկատարել, իսկ լավ՞ծ բան չէ, որ կոմերիտականը արտադրական նորման չկատարի։ Դու արատավորում ես կոմերիտականի անունը, թույլ չե՛նք տա։

Հայրենական Մեծ պատերազմի ժամանակ Մայան առիթ բաց չէր թողնում աշակերտներին հիշեցնելու, որ պետք է օգնել ռազմաճակատին։ Նա գտնում էր, որ այդ օրերին լավ սովորելն էլ օգնում է մեր հաղթանակի գործին, օգտակար է Հայրենիքի ապագայի համար։

1942 թվի հունիսի վերջին, աշակերտները գնացել էին Կրասնյանկա գյուղի կոլտնտեսությունը, բերքահավաքին օգնելու։ Մայան օր ու գիշեր հանգիստ չուներ։ Նա այնտեղ ոգևորում էր բոլորին։

## 2. «... Ի՜ՆՉ ՍԱՐՍԱՓԵԼԻ ԲԱՆ Է ԱԶԱՏՈՒԹՅՈՒՆԸ ԿՈՐՑՆԵԼԸ»...

Մայան և իր ընկերները դեռ համակված էին դպրոցական երջանիկ կյանքի հրապույրով, երբ վրա հասան ֆաշիստական տիրապետության կարճատև, բայց դառն օրերը։ Նրանցից շատերը գաղտնի մասնակցում էին Կրասնոդոնի բոլշևիկների օգնությամբ ու ղեկավարությամբ ստեղծված «Երիտասարդ գվարդիա» կազմակերպության պայքարին։

Երկու ամիս էր անցել, որ ֆաշիստները գրավել էին Կրասնոդոնը։ Մի անգամ Մայան ու իր դպրոցական ընկերուհի Նինա Գերասիմովան Կոքսուգոլ ավանից վերադառնում էին Պերվոմայկա։

— Պարտեզով գնանք,— առաջարկում է Մայան,— ավելի քիչ կհանդիպենք սրանց։ Նա ցույց է տալիս ճանապարհով ետ ու առաջ քայլող գերմանացի զինվորներին։— Ես դրանց տեսնել չեմ կարող։

— Ես շատ եմ սիրում ոտքի տակ թափված տերևների շրշյունը,— ասում է Նինան և ոտքերով ցրիվ տալիս ճանապարհին դեղնավուն գորգի պես փռված տերևների կույտերը։

Մայան մի րոպե կանգ է առնում, իր հայացքը ուղղում ծառերի ոսկեզօծված կատարներին, բարձր, կապույտ երկնքին ու բացագանչում.

— Ճիշտ որ, ամեն ինչ գեղեցիկ է բնության մեջ։

Մոտենում են շատրվանին։ Կնոջ արձանը, որ զարդարում էր շատրվանը, ջարդուփշուր է արված, կտրտված, այլանդակված ծառեր են երևում, ամառային թատրոնի պատերի մեջ ահագին անցքեր են բացվել։

Մայան և Նինան դուրս են գալիս պարտեզից, անցնում դպրոցի կողքով։

— Ա՛յ, հիմա հայրենի քաղաքով ենք

գնում, բայց մարդ օտար է զգում իրեն,— տխրությամբ ասում է Մայան։

Ու մի պահ լռելով, նա բացագանչում է.

— Ի՜նչ սարսափելի բան է ազատությունը կորցնելը...

Մայայի աչքերին արցունքներ են երևում։

— Սա ժամանակավոր բան է,— Նինան ձեռքը դնում է ընկերուհու ուսին,— կանցնի վատ երազի նման։

— Ես հասկանում եմ, Նինա, բայց ծանր է տեսնել այս ամենը։

Նինան սկսում է կողմնակի դիտողություններ անել՝ ընկերուհուն ուրիշ բանով զբաղեցնելու համար, բայց Մայան լուռ է մինչև տուն...

Այդ նույն օրերին, մի ամիս բանտում պահելուց հետո գերմանացիները ազատել էին ուսուցչուհի Պրասկովյա Սուլթանբեյին։ Բայց նա ամեն շաբաթ պետք է ներկայանար ոստիկանություն՝ հաշվի առնվելու։

— 1942 թվի դեկտեմբերին մի անգամ փողոցում պատահեցի իմ հինգ աշակերտուհիներին՝ Ուլյանա Գրոմովային, Մայային, Շուրա Բոնդարևային, Նինա Գերասիմովային ու Իննա Սամոշինային,— պատմում է ուսուցչուհին։— Նրանք թևանցուկ շղթա կազմած, արագ-արագ գալիս էին։ Երբ մոտեցան ինձ, խմբովին բարևեցին։ Ուլյանան ու Մայան բաժանվեցին, կանգ առան ու ասացին.

— Մենք ձեզանից շատ ներողություն ենք խնդրում։



Ես զարմացած հարցրի, թե ինչի՞ համար։

— Ինչպե՞ս՝ ինչի համար,— իրար ընդհատելով ասացին Ուլյան ու Մայան,— դուք այդքան ժամանակ բանտումն էիք, իսկ մենք ձեզ համար ոչինչ չկարողացանք անել։

Այն ժամանակ իմ մտքովն էլ չանցավ, թե այդ աղջիկները գաղտնի կազմակերպության անդամներ են։ Մի ամիս հետո, երբ նրանց ձերբակալեցին, ես նոր միայն գլխի ընկա, որ նրանք իսկապես մտահոգված են եղել ֆաշիստական բանտում տառապողներին օգնելու խնդրով։

Այդ անսահման հպարտության ու երախտագիտության զգացմունքով լցրեց իմ սիրտը։ Ես հասկացա, որ սովետական դպրոցում ստացած դաստիարակությունը տվել է իր պտուղները։



# ԿԱՏԱՐԵՆՔ 7-ՐԴ ՊԼԵՆՈՒՄԻ ՈՐՈՇՈՒՄՆԵՐԸ

Հոկտեմբեր ամսին Մոսկվայում տեղի ունեցավ ՀամԼԿԵՄ Կենտկոմի 7-րդ պլենումը, որը քննարկեց Վ. Ի. Լենինի անվան պիոներական կազմակերպության աշխատանքը:

Պլենումում զեկուցումով հանդես եկավ ՀամԼԿԵՄ Կենտկոմի քարտուղար ընկ. Միխայլովը: Զեկուցման շուրջը բացված մտքերի փոխանակությունից հետո պիոներական կազմակերպության աշխատանքների հետագա բարելավման մասին ընդունվեց կարևոր որոշում:

Պլենումը պահանջեց Սովետական Միության պիոներներից ու դպրոցականներից ուսումնասիրել մեծ առաջնորդներ՝ Վ. Ի. Լենինի և Ի. Վ. Ստալինի կյանքն ու գործունեությունը: Պատանի լենինյանի պատվավոր կոչումն արդարացնելու համար սովետական պիոներները թե՛ ուսման մեջ և՛ թե աշխատանքում պետք է նմանվեն Վ. Ի. Լենինին և Ի. Վ. Ստալինին, նրանց պես սիրեն հայրենիքը, նրանց պես պայքարեն ժողովրդի գործի համար: Դրա հետ միասին անհրաժեշտ է ծանոթանալ մեր երկրի իրադարձություններին, սովետական ժողովրդի հաջողություններին՝ կոմունիզմի կառուցման գործում, ժողովրդական տնտեսության, գիտության, կուլտուրայի նվաճումներին:

Սովետական երեխաները կոմունիզմի ապագա կառուցողներն են, իսկ «կառուցելու համար պետք է գիտենալ,— ասել է ընկեր Ստալինը,— պետք է տիրապետել գիտությանը, իսկ գիտենալու համար պետք է սովորել, սովորել համառորեն, համբերատար կերպով»:

Պարզ է, որ դպրոցականի համար ամենակարևորն ուսումն է: Մատաղ սերունդն իր գիտելիքները հիմնականում ստանում է դպրոցում, դասի ժամանակ, ուսուցչի օգնությամբ: Այդ իսկ պատճառով պլենումը պիոներական կազմակերպություններից պահանջեց օգնել ուսուցչին, որպեսզի յուրաքանչյուր դասն անցնի կազմակերպված, որպեսզի սովորողներն ուշադրությամբ լսեն ուսուցչի բացատրությունները, դասի ժամանակ լինեն ակտիվ, բարեխղճությամբ կատարեն տնային առաջադրանքները:

Ուսման զուգընթաց, պիոներները պետք է ձեռք բերեն նաև աշխատանքի ունակություններ: Աշխատանքը յուրաքանչյուրին կդարձնի ուժեղ, տոկուն, դժվարություններից չվախեցող: Հարկավոր է փոքր հասակից սիրել ֆիզիկական աշխատանքը, աշխատել տանը, դպրոցում, կոլխոզում, ուսումնական կաբինետում, դպրոցական հողամասում...

Պլենումն առաջարկեց 6 և 7-րդ դասարանների աշակերտների համար կազմակերպել ֆիզիկայի, քիմիայի, ռադիոտեխնիկայի, լուսանկարչության, ավիոմոդելիստների, նավամոդելիստների և այլ խմբակներ: Իսկ 3—5-րդ դասարանների աշակերտների համար կազմակերպել «հմուտ ձեռքեր» խմբակներ, որտեղ նրանք հնարավորություն կունենան պատրաստել ամենապարզ մոդելներ ու գործիքներ, գրքեր կազմել, ձեռագործել... Հատուկ ուշադրություն պետք է դարձնել դպրոցներին կից հողամասերի, այգիների, ծաղկանոցների ստեղծմանը: Պլենումը հավանություն տվեց դաշտապաշտպան անտառաշերտերի, ջրանցքների կառուցման համար սերմեր հավաքելու և տնկիներ աճեցնելու ուղղությամբ պիոներ-դպրոցականների նախաձեռնությանը և պահանջեց, որ պիոներներն ակտիվ կերպով օգնություն ցույց տան մեծերին՝ տնկիները խնամելու, դրանք պահպանելու արժեքավոր գործում:

Մեր ժողովուրդը ցանկանում է, որ իր մատաղ սերունդը լինի տոկուն, ուժեղ, առույգ, կարողանա հաղթահարել ամեն մի դժվարություն: Այդ պատճառով անհրաժեշտ է զբաղվել ֆիզկուլտուրայով, ամեն օր կատարել առավոտյան մարմնամարզություն: Փոքրերը պետք է դրսում հաճախակի անցկացնեն խաղեր, զբոսանքներ, սահեն դահուկներով, չմուշկներով, կատարեն մարմնամարզական վարժություններ, իսկ բարձր դասարանների պիոներները ընդգրկվեն թեթև ատլետիկայի, մարմնամարզության, դահուկային, չմուշկային և այլ սեկցիաներում, հանձնեն ԵՊԱՊ-ի կրծքանշանի նորմաները, կազմակերպեն արշավներ և էքսկուրսիաներ Հայրենի երկրում: Անհրաժեշտ է կառուցել և

կահավորել սպորտ հրապարակներ: Պլենումը պահանջեց պիոներական կազմակերպություններից 1952 թվի ընթացքում ավարտել դպրոցներին և մանկապարտեզներին կից սպորտհրապարակները:

Յուրաքանչյուր պիոների իղձն է դառնալ կոմերիտական, սոցիալիստական հասարակարգի կուլտուրական կառուցող: Իսկ դրա համար անհրաժեշտ է ոչ միայն լավ սովորել դասերը, այլ և շատ գեղարվեստական գրքեր կարդալ. կազմակերպել կարդացած գրքերի քննարկումներ, ընթերցողների կոնֆերանսներ, հանդիպումներ գրողների հետ, կազմակերպել կոլեկտիվ կինո-դիտումներ, թանգարանների, պատկերասրահների այցելություններ: Անհրաժեշտ է, որ յուրաքանչյուր պիոներական դրուժինա ունենա իր երգեցիկ խումբը, նկարչական, քանդակի, ձեռագործի խմբակներ, որտեղ ընդգրկվեն որքան հնարավոր է մեծ թվով երեխաներ:

Պիոներական կազմակերպության կյանքում կարևոր նշանակություն ունեն պիոներական օղակային, ջոկատային, դրուժինայի հավաքույթները: Այդ հավաքույթները պետք է լինեն գրավիչ, հետաքրքիր: Դա հնարավոր է միայն այն դեպքում, երբ պիոներները ակտիվ մասնակցություն ունենան նրա նախապատրաստությանը և անցկացմանը: Հավաքույթները երբեմն պետք է անցկացվեն ոչ միայն ժողովների, այլ և սպորտային խաղերի, մրցումների, զբոսանքների, էքսկուրսիաների ձևով:

Հաջողությամբ սովորելու, լավ կարգապահության, դպրոցական կյանքին, հասարակական օգտակար աշխատանքին ակտիվ մասնակցություն ունենալու համար, լավագույն պիոներները կարժանանան շնորհակալության օղակի, ջոկատի, դրուժինայի շարքի առաջ. նրանց կլուսանկարեն դրուժինայի բացված դրոշակի մոտ, կպարգևատրեն ՀամԼԿԵՄ Կենտկոմի և ՀԼԿԵՄ Կենտկոմի պատվոգրերով: Պիոներները պարտավոր են լավ սովորել, լավ աշխատել, ծանոթանալ Լենինյան-Ստալինյան կոմերիտմիության պատմությանը, որպեսզի արժանանան կոմերիտականի պանծալի անունը կրելու իրավունքին: Մեր ռեսպուբլիկայի պիոներական կազմակերպությունները կոմերիտական կազմակերպության ղեկավարությամբ, կգործադրեն իրենց բոլոր ուժերը՝ մինչև վերջ կենսագործելու ՀամԼԿԵՄ Կենտկոմի 7-րդ պլենումի որոշումները:



Շահումյանի անվան դպրոցում: Լյուբա Շևցովայի անվան դրուժինայի առաջին ջոկատի № 1 օղակի անդրանիկ հավաքույթը:

Նորընտիր օղակավար Իդա Ստեփանյանն աշխատանքի բաժանում է անցկացնում:

Ֆոտո՝ Վ. ՍԵՎՈՅԱՆԻ

# ԳԼԽԱՎՈՐ ԹՈՒՐՔՄԵՆԱԿԱՆ ՋՐԱՆՑՔԸ

*(Նամակ Թախիա-Տաշից)*

*ԱՐ. ՕՀԱՆՅԱՆ*

*Նկ. Տ. ՍՅՈՒԴՋՅԱՆԻ*

Կրասնովոդսկ նավահանգստից դեպի Չարջոու քաղաքը գնալու ճանապարհին ես վագոնի պատուհանից զարմանքով դիտում էի Կարա-Կում անապատը: Որքա՜ն մեծ, անսահման է այս անապատը: Կարա-Կումը տարածվում է Կասպից ծովից մինչև Ամու-Դարյա գետը: Այստեղ երևում են ավազաբմբեր, որոնք կոչվում են բարխաններ: Երբ փչում է մեղմ քամին, բարխանների կատարից ավազը ծխի պես բարձրանում է վեր:

— Այս ավազներին մի՛ նայեք,— ասում է կողքիս կանգնած ծերունի թուրքմենը:— Կարա-Կումում շատ և հրաշալի հողեր կան: Երբ ջուր լինի՝ առատ բերք կտան: Այստեղ բույսի աճման համար հարկավոր լույս էլ, ջերմություն էլ կա, բայց ջուր չկա:

Կարա-Կումում հաճախ օդանավերի մոտորների խուլ հնչյուն է լսվում: Այդ ջրատարներն են. Աշխաբադ քաղաքից ջուր են տանում Կարա-Կումի բնակիչների համար:

Հասնում ենք Չարջոու... Դա օազիսային քաղաք է Ամու-Դարյա գետի ափին: Այգիներում ու բանջարանոցներում բերքահավաքի եռուզեռ է: Քաղաքում կան բազմաթիվ նորակառույց տեքստիլ գործարաններ: Ափսոս քաղաքը դիտելու ժամանակ չկա. նույն օրը նավով պիտի մեկնեմ Թախիա-Տաշ: Ամու-Դարյան սրընթաց հոսում է քաղաքի մոտով: Ամու-Դարյայից է սկիզբ առնում Գլխավոր Թուրքմենական ջրանցքը: «Ամու» նշանակում է կատաղի: Եվ իսկապես՝ սկիզբ առնելով Հինդուկուշի լեռների սառցադաշտերից ու Պամիրից, դեղնագույն-պղտոր Ամուն կատաղի հոսանքով սլանում է դեպի Արալի ծովը: Երբեմն Ամու-Դարյան իր ափերից պոկում և քշում է ամբողջ հողամասեր: Բայց սովետական մարդիկ շուտով կսանձեն այդ գետը: Նա կծառայի կոմունիզմի կառուցման գործին:

Չարջոուից նավով Ամու-Դարյայի վրայով ճանապարհվեցի դեպի Թախիա-Տաշ, որը գտնվում է գետի դելտայի մոտ, ձախ ափին: Այստեղ է կառուցվելու Գլխավոր Թուրքմենական ջրանցքի ամենամեծ ջրամբարը: Դեպի Թախիա-Տաշ լողում են շատ բեռնատար նավեր, տանելով՝ անտառանյութ, շինանյութ, նավթ, բենզին, տրակտորներ, մեքենաներ, սննդամթերք:

Հաջորդ օրն արդեն Թախիա-Տաշում էի: Մի տարի առաջ այստեղ համարյա ամայի էր: Այժմ Թախիա-Տաշն ունի՝ էլեկտրակայան, ջրմուղ, բազմահարկ տներ, փայտամշակման գործարան, արհեստանոցներ: Շուտով Թախիա-Տաշը նոր երկաթուղով կկապվի Ուրգենչ քաղաքի հետ:

Սեպտեմբերի մեկին այստեղ բացվեց նորակառույց միջնակարգ դպրոցը:

Սովետական մարդիկ ջրանցքի կառուցումն ավարտելու են 1957 թվին: Այդպիսի առաջադրանք է տվել ընկեր Ստալինը:

Թախիա-Տաշում կարելի է հանդիպել Սովետական Միության համարյա բոլոր ռեսպուբլիկաներից եկած՝ գիտնականների, ինժեներների, տեխնիկների, երկրաբանների: Նրանք հետազոտական աշխատանք են կատարում ջրանցքի շինարարությունն սկսելու համար: Ճիշտ որ սա մի համաժողովրդական շինարարություն է:

Թախիա-Տաշում հանդիպեցի Երևանից այստեղ եկած իմ ծանոթ հիդրոտեխնիկներից մեկին: Նա մանրամասն պատմեց ջրանցքի շինարարության մասին:

Իմացա, որ Գլխավոր Թուրքմենական ջրանցքը աշխարհի ամենամեծ ջրանցքն է լինելու: Սա կարելի է համեմատել միայն Չինական մեծ ջրանցքի հետ: Ջրանցքը ձգվելու է Թախիա-Տաշից մինչև Կրասնովոդսկ և ունենալու է 1100 կիլոմետր երկարություն: Եվ այսպիսի մեծ ջրանցքը կառուցվելու է 7 տարում, մինչդեռ Սուեզի ջրանցքը (166




կիլոմետր) կառուցվել է 22 տարում, իսկ Պանամայի ջրանցքը (81 կիլոմետր)՝ 35 տարում:

Գլխավոր Թուրքմենական ջրանցքը ըսկիզբ է առնելու Ամու-Դարյայից՝ Թախիա-Տաշի մոտերքից և գնալու է դեպի Ամու-Դարյայի նախկին հունը՝ Ուզբոյ: Ուզբոյի հունով հինգ հարյուր կիլոմետր անցնելով ջրանցքը հասնելու է Կասպից ծովի ափը՝ Կրասնովոդսկ քաղաքը: Թախիա-Տաշի ամբարտակից դեպի արևմուտք, ջրանցքի վրա, կառուցվելու են երկու խոշոր ամբարտակ՝ իրենց ջրամբարներով: Ջրամբարներից ըսկիզբ են առնելու ջրատար առուներ՝ Կարա-Կումի հողերը ոռոգելու համար: Դրանց ընդհանուր երկարությունը կլինի 1200 կիլոմետր: Ջրանցքը ջուր է տալու ավելի քան 8 միլիոն հեկտար հողերի:

Ջրանցքի երեք ամբարտակին կից կառուցվելու են երեք հիդրոէլեկտրակայան, որոնց ընդհանուր կարողությունը կլինի հարյուր հազար կիլովատ:

Ջրանցքով ջրվող հողերում սպիտակ վարդերի պես կբացվեն բամբակենու կնգուղները, անուշ հյութերով կլցվեն ոսկեհատիկ խաղողը, կարմրաթուշ դեղձը, կարմրահատիկ նուռը, պտուղ կտան թթենին, թզենին և այլ ծառեր: Ջրովի դարձած արոտավայրերում կարածեն միլիոնավոր ոչխարներ ու խոշոր եղջյուրավոր անասուններ: Ջրանցքի ջրով Կարա-Կումում կտեղծվեն անտառներ, պուրակներ, ծաղկանոցներ: Դրա համար Թուրքմենստանի, Ուզբեկստանի պիոներներն արդեն աճեցնում են տասնյակ հազարավոր տնկիներ, հավաքում են ծառերի սերմեր:

Գլխավոր Թուրքմենական ջրանցքի էլեկտրակայանները առատ լույս կսփռեն Կարա-Կումի քաղաքների, գյուղերի, դաշտերի վրա: Էլեկտրական էներգիան կաշխատեցնի Թուրքմենստանի՝ նավթի, քիմիական, մեքենաշինական, տեքստիլ և սննդի գործարանները:

Ջրանցքի վրա կլողան նավերը: Նրանք Կասպից ծովից Վոլգայի վրայով կհասնեն Մոսկվա և նորից կվերադառնան Կարա-Կում: Նավերը կտանեն՝ քարածուխ, նավթ, բամբակ, բուրդ, կարակուլ, մորթի, մրգեր և կբերեն Մոսկվայի և մեր հայրենիքի մյուս շրջանների արտադրանքները:

Այժմ հազարավոր մարդիկ անդուլ աշխատում են, որ պատվով կատարեն ընկեր Ստալինի այդ առաջադրանքը, Կոմունիզմի մեծ կառուցումը՝ Գլխավոր Թուրքմենական ջրանցքն ավարտելու համար:

# Երրորդ դասարանի ԱՇԱԿԵՐՏՆԵՐԸ

(Հատվածներ վեպից)

ԳԱՆՆԱ ՕԺՈԳՈՎՍԿԱՅԱ
(Լեհ կին գրող)

Նկ. Ս. ՄՈՒՐԱԴՅԱՆԻ

## 1. ԴՊՐՈՑՈՒՄ

Այս տարի մեր երրորդ դասարանն արդեն պարապելու է ուրիշ սենյակում, իսկ նախկինում՝ նորեկ աշակերտները—առաջին դասարանցիները: Այդ նորեկները շատ զվարճալի երեխաներ են: Դեռևս ոչ մի կերպ չեն կողմնորոշվում, չեն կարողանում գտնել իրենց դասարանը, կորցնում են իրերը և հազիվ լաց չեն լինում:

Մեծ դասամիջոցին, միջանցքում, ահա կանգնել է դրանցից մեկը և լաց է լինում: Աշակերտները քիչ մնաց՝ նրան ծաղրեին, բայց մեր դասարանցի Բասյան իսկույն միջամտեց և ամաչեցրեց երեխաներին.

— Մի՞թե կարելի է. մոռացե՞լ եք, ի՞նչ է, թե դուք ինքներդ ինչպիսին էիք:

Եվ ահա Յանեկը հարցրեց փոքրիկ տղային, թե ինչո՞ւ է լաց լինում: Պարզվեց, որ գլխարկն է կորցրել:

— Դե որ այդպես է, գնա հանդերձապահին հարցրու,— ասաց Յանեկը:

— Ես չգի-ի-ի՛տեմ, թե ով է նա՜...

— Լավ, եկ գնանք միասին: Լաց մի՛ լինի: Եթե գլխարկդ հանդերձապահի մոտ չլինի, ապա գրատախտակին հայտարարություն կփակցնենք, և ինչպես էլ լինի, կգտնենք: Անունդ ի՞նչ է:



— Լյո՛... Լյոլեկի՛կ...

— Է՜, չեղավ, եղբա՜յր,— ասաց Յանեկը,— դու այստեղ արդեն ուղղակի Լյոլեկ ես... Արդեն դպրոց ես գնում, հիմա էլ փոքրիկ տղա չես: Լաց լինելն էլ արդեն անհարմար է:

Գլխարկը հայտնաբերվեց հանդերձապահի մոտ, գտել էր միջանցքում:

Դասերից հետո, դպրոցի մոտ, նորեկներին սպասում էին ծնողները. բոլորը չէ, որ կարող էին գտնել տան ճանապարհը ուսման հենց առաջին օրը: Մի ծեր կին բարձրաձայն կանչեց փոքրիկ տղային.

— Լյոլեկի՜կ, Լյոլյուսի՜կ:

— Տատի՛,— լրջորեն պատասխանեց տղան,— ինձ հիմա ուղղակի ասա Լյոլեկ. չէ՞ որ ես արդեն առաջին դասարանի աշակերտ եմ և արդեն փոքր տղա չեմ...

## 2. ՄԵՐ ՁԱՅՆԸ ՄԻԱՑՆԵՆՔ ԽԱՂԱՂՈՒԹՅԱՆ ՊԱՅՔԱՐԻՆ

Դպրոցից ոչ հեռու գտնվում է սովետական մի զինվորի շիրիմ:

Երեխաները պսակներ հյուսեցին և դրեցին այդ շիրիմի վրա: Այնտեղ հուշարձան է կանգնեցված, որի վրա կա մի փոքրիկ տախտակ: Արևից տառերը ջնջվել են և կարելի է կարդալ միայն այսքանը.

«...18 տարեկան... Զոհվել է ազատության համար մղված մարտերում... 1945 թիվ»:

Բայց առանց այդ էլ երեխաները գիտեն, թե ով է հանգչում այդ շիրմում:

— Չգիտես ինչու, մարդ այստեղ ավելի է տխրում, քան գերեզմանատանը,— մեղմ ձայնով ասում է Յանեկը:— Այնտեղ թաղված են ծերությունից կամ հիվանդությունից մեռած մարդիկ, իսկ այստեղ...

— Իհարկե,— ասում է ուսուցչուհին,— չէ՞ որ մենք գիտենք՝ զոհվել է երիտասարդ մի մարտիկ:

— Գուցե նա որբ է եղել: Կամ գուցե նրա մայրն այժմ մնացել է միայնակ,— տխուր ու մտախոհ ասում է Սաբինկան:

— Պանի[1]) ուսուցչուհի,— ասում է հանկարծ Օլեկը,— մենք պետք է այնպես անենք, որ էլ երբեք, երբեք պատերազմ չլինի…

— Է՜,— ասում է Զոսյան,— մենք ի՞նչ կարող ենք անել. մենք դեռ երեխաներ ենք։

— Ներողությո՛ւն, իսկի էլ չէ,— խռովեց Ֆելեկը,— երեխաները նախադպրոցականներն են, իսկ մենք պատանիներ ենք. արդեն պատանեկական գրքեր ենք կարդում։

— Այժմ խաղաղության օգտին քվեարկում են աշխարհի բոլոր ազնիվ մարդիկ։ Դուք էլ կարող եք ձեր ձայնը միացնել ընդհանուր պայքարին,— բացատրեց ուսուցչուհին։

— Մենք այդ մասին կարող ենք խոսել այնպես, որ մեզ լսի ամբողջ աշխարհը, ճի՞շտ է,— հարցրեց նրան Յանեկը։

— Այո։

— Այդ ինչպե՞ս,— հարցրեց Յաձյան։

— Ռադիոյով։

Բոլորը հարգանքով նայեցին Յանեկին, և ուսուցչուհին ասաց.

— Լավ միտք է։ Եկեք նամակ ուղարկենք ռադիոկոմիտե, և դուք կասեք այն ամենը, ինչ հուզում է ձեզ։

— Նամակ…— դժգոհեց Ֆելեկը,— իսկ ես կարծում էի, թե մենք ենք ելույթ ունենալու։ Ես կուզենայի բարձրաձայն ասել, որ պատերազմ չեմ ուզում… որպեսզի բոլորն էլ լսեին։

## 3. «ՅԱՑԵԿ, ԻՍԿ Ո՞ՒՐ Է ՔՈ ՊԼՅԱՑԵԿԸ»[2])

— Մայրի՛կ, այսօր էքսկուրսիայի գնալիս հետս մի ամբողջ պլյացեկ պիտի վերցնեմ։

— Շատ չէ՞, Յասո՛ւ։

— Ոչ, մայրի՛կ։ Ես Ֆելեկին խոստացել եմ, որ հացը միասին ենք ուտելու, իսկ նա իրենց այգուց կեռաս է բերելու։ Ֆելեկն ասում է, որ զբոսանքների ժամանակ իր ախորժակը խիստ բացվում է։

— Լավ, վերցրու։ Ինչ որ պետք է հետդ տանես, պատրաստիր. ես քեզ կօգնեմ, որ դասավորես։

— Շնորհակալ եմ, մայրի՛կ։ Բայց մեր ջոկատավարը շարունակ ասում է, որ խարցեժը[1]) ինքը պետք է կարողանա ուսապարկի մեջ իրերը դասավորել։

— Շատ լավ։ Բայց դու այդքան երկար մի՛ նստիր, թե չէ կուշանաս։

Յացեկն էլ էր այդպես մտածում, բայց հակառակի նման շատ հետաքրքիր գիրք էր կարդում։ Երբ ավարտեց այն, կեսգիշերից արդեն անց էր և նրա աչքերը փակվում էին։ Ուսապարկը կարգի բերելու էլ ինչ ժամանակ էր։ «Վա՛վ, մի քիչ շուտ կարթնանամ և ինչ որ պետք է կդասավորեմ»— մտածեց տղան։

Իսկ առավոտյան… Յացեկն արթնացավ և սարսափով տեսավ, որ ժամը յոթից քառորդ է պակաս։ Շտապ-շտապ լվացվեց և նույնիսկ առանց սանրվելու, արագորեն



սկսեց կարգի բերել ուսապարկը։ Գործը չէր հաջողվում, քանի որ ոչինչ չէր պատրաստել։ Ուզեց հագնել կոշիկները, բայց դրանք փոշոտ էին, բացի այդ ամեն թելի վրա գրեթե տաս հանգույց կար։ «Վերցնեմ նորերը, չէ՞ որ այսօր հանգստյան օր է», կարծես ինքն իր առաջ արդարանալով, վճռեց Յացեկը։ Իրերը ուսապարկի մեջ մի կերպ դասավորելով, այդտեղ դրեց նաև պլյացեկը, որ դեռևս երեկ թղթի մեջ էր փաթաթել մայրիկը։ Վերևից դրված էին ֆուտբոլի գնդակը և պոմպը։ Յացեկը երեկ մոռացել էր գնդակը փչել, ուստի ստիպված էր այդ ամենն էլ ներս

1) Պանի—տիրուհի (լեհերեն)։
2) Պլյացեկ—ցորենի մեծ բլիթ։

1) Խարցեժ—այսպես են կոչվում լեհ պիոներները։

խցկել ուսեւլիքի ու մաքուր սպիտակեղենի հետ միասին։

Վերջապես տղան սլացավ դպրոց։

Կիրակի օր էր։ Փողոցներում դեռ ոչ ոք չկար, բայց Յացեկը կարծում էր, թե դպրոցին մոտենալով, կլսի այնտեղ հավաքված երեխաների ձայնը։ Դպրոցի բակի լռությունը ու ամայությունը զարմացրին տղային։ «Չլինի՞ թե ես առաջինն եմ եկել»— մտածեց նա։ Բայց դպրոցի ժամացույցով յոթից անց էր տաս րոպե։

— Արդեն գնացել են, ի՞նչ անեմ,— բարձրաձայն մտածեց Յացեկը։— Տուն վերադառնալն ամոթ է և տհաճ... Հասնե՞մ. չէ՞ որ հենց նոր են գնացել։ Գիտեմ որ կողմը... Ջրաղացի մոտի անտառը հեռու չէ, իսկ դադարի տեղը անպայման կգտնեմ...

Եվ տղան առույգ քայլերով դուրս եկավ քաղաքից։ Գնում էր արագ։ Ծառերի ստվերում կորած ճանապարհը, որով սովորաբար բազմաթիվ մեքենաներ ու կառքեր էին անցնում, այժմ ամայի էր։ Երբ Յացեկն արդեն մոտենում էր անտառին, ձախ կոշիկն անտանելի կերպով սկսեց սեղմել ոտքը։ «Ափսոս, որ չհագա հին կոշիկներս,— մտածեց Յացեկը,— բայց լավ, մի կերպ տեղ կհասնեմ»։

Սակայն ցավն ավելի ու ավելի էր սաստկանում։ Յացեկն սկսեց կաղալ։ Երբ անտառ մտավ, ցավն այնքան անտանելի դարձավ, որ նա ստիպված եղավ կոշիկը հանել։ Կրնկի վրա երևում էր մի մեծ բշտիկ։ Պետք է արդեն հրաժարվել կոշիկներով քայլելու մտքից։ Կոշիկներն իրար կապեց և աջ ձեռքն առավ. ձախ ձեռքն զբաղված էր գլխարկով, որ Յացեկն հանել էր շոգի պատճառով։ Արագ քայլելուց քրտինքն առվի նման հոսում էր, մազերն իրար էին կպել և թափվում էին աչքերի մեջ։ Մազերը ետ գցելով, Յացեկը փռշին այս ու այն կողմ էր քսում. ամբողջ դեմքը ծածկվել էր կեղտի շերտերով։

Հանկարծ տղային թվաց, թե ինչ-որ մի տեղ հնչեց պիոներական երգը։ «Այ, հիմա կհասնեմ»— թեթևացած շունչ քաշեց Յացեկը և նորից արագ-արագ առաջ քայլեց, առանց ուշադրության դարձնելու, որ մերկ ոտքերը քերծվում են։ Շուտով նրա առջև բացվեց մի քանի ճանապարհ։ Ո՞րով գնա։

Խարցեծները երբեմն կամ զբոսանքի գնալիս, հաճախ ճանապարհի ուղղությունը ցույց տվող նշաններ են թողնում։ Այստեղ էլ պետք է որևէ նշան լինի՝ թփերի կամ կոճղերի վրա։ Յացեկն ուշադրությամբ շուրջը նայեց։ Ահա, կարծես այն մեծ կոճղի վրա ինչ-որ նշան կա։ Դա երևի Ֆելեկն է արել. նա գրպանում շարունակ մի կտոր կավիճ է պահում։

Յացեկը նետվեց դեպի կոճղը, կպավ ծառի ճյուղին և ջրափոսն անցնելիս, վնասեց ծունկը և խիստ ցավ զգաց։ Կոշիկներն ընկան ուղիղ ջրափոսը, գլխարկը մի կողմ թռավ, պոմպն ուժգին դիպավ մեջքին... Ծունկն արյունոտվելու չափ քերծվել էր, բայց դա չէր ցավը, քանի որ Յացեկը մոտերքից պարզորոշ կերպով լսեց երեխաների ձայները։ Այո, այո, այդ նրանք են։ Ահա,



ջոկատավարը ցուցակն է կարդում... Ահա, կարդում է՝ Յացեկ Ռոստկովսկի...

Յացեկը վազեց ինչքան ուժ ուներ։

— Ներկա՛ եմ, ներկա՛...

Շարք կանգնած երեխաների առաջ հայտնվեց Յացեկը։ Սկզբում նրան ոչ ոք չճանաչեց. մազերը գզգզված էին, ոտքերը՝ մերկ ու ճանկռոտված, դեմքը՝ կեղտի մեջ կորած, գլխարկը՝ փոշոտ, խոտերով ծածկված կոշիկներից ջուր էր կաթում, մեջքին

անճոռնի կերպով ցցվել էր ուսապարկը. այդ բոլորը նման չէր Յացեկ Ռոստկովսկուն:

— Մի՞թե այդ դու ես, Յացե՛կ,— կասկածով հարցրեց ջոկատավարը:

— Բա էլ ո՞վ է... Իհարկե, ես եմ...— հազիվ շունչ առնելով, քրթմնջաց Յացեկը,— միայն թե մի քիչ ուշ արթնացա... բայց էլի հասա ձեզ,— հառաչեց նա թեթևացած:

— Իսկ պլյացեկ բերե՞լ ես,— լսվեց հանկարծ Ֆելեկի ձայնը:

— Բերել, եմ, ինչպե՞ս չէ,— չհասկանալով նրա դիտավորությունը, պատասխանեց Յացեկը, դուրս բերելով պոմպից տրորված պլյացեկը:

Ամբողջ ջոկատը քրքջաց: Տրորված շորերով, կեղտոտ ու գզգզված մազերով, հավաքույթից ուշացած, պլյացեկը, կոշիկներն ու գլխարկը կեղտոտ ձեռքերին՝ տղան իսկապես ծիծաղելի էր:

Այնուհետև դպրոցում երեխաները երկար ժամանակ բարեսրտորեն ծաղրում էին Ռոստկովսկուն, հարցնելով.

— Յացե՛կ, իսկ ո՞ւր է քո պլյացեկը:

Թարգմ. ՅԱ. ՆԵՄՉԻՆՍԿԻ
և Պ. ՄԻՔԱՅԵԼՅԱՆ



## ԽԱՂԱՂՈՒԹՅՈՒՆ

*Հ. ՇԻՐԱԶ*

Ես խաղաղությունն այնպես եմ սիրում,
Կարծես մանկական սիրտ կա կրծքիս տակ:

Ես խաղաղությունն այնքան եմ սիրում,
Կարծես մայրական սիրտ կա կրծքիս տակ:

Բայց ո՛ր զինվորը նրան չի սիրում
Երբ ֆաշի ազնիվ սիրտ կա կրծքի տակ:

## ԵՐԳ ԽԱՂԱՂՈՒԹՅԱՆ

*ՄԿՐՏԻՉ ԿՈՐՅՈՒՆ*

Կռվի հրձիգներն արյամբ մոլեգնած,
Ձգտում են կրկին ոսկու և արյան,
Ելե՛ք, ում հոգին սիրով է լցված
Հանուն հարատև, լույս խաղաղության,
Ով չի կամենում սովից մահանան
Մանուկ, ծեր ու կին, և՛ մայր, և՛ որդի,
Ով չի կամենում ստրուկներ դառնան
Զավակները բյուր ժողովուրդների:
Ելե՛ք, ով խաղաղ կյանք է երազում,
Ով որ չի ձգտում կռվի ու արյան,
Ով կամենում է ամբողջ աշխարհում
Շողա արևը երջանիկ գարնան:



# ԵՐԵՍՈՒՆՄԵԿ ՏԱՐԻ

Դարերի խորքից է գալիս հայ ժողովուրդը: Ինչ դավեր ու ավեր է տեսել նա, կրել է անհոգի ու դաժան կեղեքիչների լուծը, ենթարկվել բազմաթիվ ասպատակությունների: Նրա ծվատված, թշնամիների կողմից ավերված հայրենիքը կոչվել է բազմատանջ Հայաստան:

Երեսուն մեկ տարի առաջ սովյալ ու տառապյալ հայ ժողովուրդը կանգնած էր կատարյալ ոչնչացման առաջ: Եվ ահա նրա պատմության այդ ամենածանր պահին նրան օգնության հասավ մինչեւ ռուս մեծ ժողովուրդը, բոլշեւիկների փառապանծ պարտիան:

Մեծ առաջնորդ Ստալինի անմիջական ղեկավարությամբ հայ ժողովուրդը փրկվեց ֆիզիկական ոչնչացումից:

Սովետական կարգերի հաստատումը նոր, պայծառ էջ բաց արեց Հայաստանի, հայ ժողովրդի պատմության մեջ:

Այժմ անցել է ընդամենը երեսունմեկ տարի, սակայն ինչ-պիսի [illegible] փոփոխություններ են տեղի ունեցել մեր ռեսպուբլիկայում:

Աճել ու բարգավաճել են ռեսպուբլիկայի քաղաքներն ու գյուղերը, կառուցվել են բազմաթիվ գործարաններ ու ֆաբրիկաներ, ուր օգտագործվում են հրաշալի մեքենաներ, դազգաններ, էլեկտրական սարքավորում, արդյունաբերական հազվագյուտ ու թանկարժեք ապարատներ: Մինչռևոլյուցիոն Հայաստանում այդ ամենի մասին երազել անգամ չէին կարող:

Մի՞թե կարելի էր ենթադրել, թե Հայաստանի խոր ձորերում ու հեռավայրերում ընկած, հավերժ խավար գյուղերը, ուր հաճախ ձեթ չէր լինում ճրագի համար, երբևէ կողողվեն էլեկտրական լույսերով: Մի՞թե հնարավոր էր մտածել, որ ընդամենը երեք տասնամյակից հետո պապենական արորին, փոցխին, գերանդուն կփոխարինեն տրակտորը, կոմբայնը, շարքացանները, էլեկտրական կալսիչները և բազմաթիվ այլ մեքենաներ, որ ռադիոն, հեռախոսը, ավտոմեքենան կդառնան սովորական բաներ:

Այո, այն ժամանակ այդ մասին երազել անգամ չէր կարելի:

Սովետական Միության եղբայրական ժողովուրդների օգնությամբ, հայ ժողովուրդն [illegible] կառուցել մի նոր Հայաստան: Եվ այժմ ահա նա փռված է մեր մեծ ու հզոր հայրենիքի ծայրագույն հարավում՝ որպես հարուստ, շքեղ, բարեկարգված մի երկիր: Սքանչելի են նրա բերքառատ արտերն ու այգիները, այս ու այնտեղ փռված նորակառույց գյուղերն ու ավանները՝ իրենց դպրոցներով, կուլտուրայի տներով, փրփրադեզ գետակների վրա կառուցված էլեկտրակայաններով: Սքանչելի է նրա գեղատեսիլ, գույնզգույն տուֆով զարդարված, ասֆալտապատ, լայն պողոտաներով, հոյակերտ տներով մայրաքաղաքը՝ Երևանը:

Ազատագրված, երջանիկ ստեղծագործական աշխատանքի ավյունով լի հայ ժողովուրդը բոլշեվիկների պարտիայի, սիրելի առաջնորդ Ստալինի ղեկավարությամբ, անգնահատելի հարստություններ ու վայելքներ է ստեղծել իր երկրում:

Տնտեսության հետ միասին բարգավաճել է ժողովրդի կուլտուրան՝ գիտությունը, արվեստը, գրականությունը:

Սովետական Հայաստանի մատաղ սերունդը տերն է այն ամենի, ինչ ստեղծել են նրա ծնողներն ու հարազատները: Տիրապետելով գիտություններին, անխոնջ բարձրացնելով իր կրթական ու կուլտուրական մակարդակը, նա պետք է առաջ տանի կոմունիզմի կառուցումը մեր երկրում: Սիրելի հայրենիքի համար օգտավետ մարդ լինելու, ավագ սերնդի ջանքերով ձեռք բերված հարստությունները, վայելքները բազմապատկելու, էլ ավելի երջանիկ ապրելու համար մատաղ սերունդը պատրաստվում է ջանասիրությամբ սովորել, միշտ, ամենուր պատրաստ լինել Լենինի—Ստալինի գործի պայքարի համար:



...-րդ արհեստագործական դպրոցի ուսման գերազանցիկ ... Խանամիրյանը խառատային դազգահի մոտ

Մեքենաշինական գործարանի նորարար խառատ Ս. Զարմանյանը կատարում է Կոմունիզմի մեծ կառուցումների պատվերները



Երևանի հինգերորդ մանկական պոլիկլինիկայում. Բժշկուհի Է. Ղամարյանը աշխատանքի ժամին




Բամբակահավաք մեքենան Հայաստանի կոլխոզային դաշտերում



Ամիրյանի նորակառույց փողոցը Երևանում



... [illegible] ֆակուլտետում



Շահումյանի անվան դպրոցի 9 բ դասարանի աշակերտուհիները ...

# Չինական երգեր

*ԼՅՈՒՅ ՑԶՅԱՆ*

**ՍՏԱԼԻՆՆ Է ՀՈՒՅՍԸ ԲՈԼՈՐ ՍՐՏԵՐԻ**

Այս երգն անցնում է ամեն մի սահման,
Աշխարհն է երգում այս երգը հիմա.
Այստեղ Ստալինի անունն է հնչում,
Ավելի լավ երգ աշխարհում չկա.

«...Ո՜վ մեծ առաջնորդ, մեր հայր սիրելի,
Կրեմլի պալատից՝ աշխատող մարդուն
Վառ ու կենսատու արևից անգամ
Ավելի ես դու տալիս ջերմություն:

Համախմբեցիր, դարձրիր ամենքիս
Դու խաղաղության մի բանակ հզոր.
Դրա համար են սրտերն ազգերի
Մի սրտի նման բաբախում այսօր:

Ամբողջ աշխարհի ժողովուրդների
Սրտերը հիմա ձուլվել են իրար
Եվ իրենց հույսը, իրենց ապագան
Քեզ հետ են կապել, Ուսուցիչ և Հայր»:



*ԳՈ ՄՈ-ԺՈ*

**ԿԵՑՑԵ ՍՏԱԼԻՆԸ**

*(Հատված պոեմից)*

Քո խոսքով են
Լեռներն իրենց տեղը փոխում.
Անապատն է դառնում այգի, տալիս բարիք.
Եվ քո խոսքով
Բախտի արևն է շողշողում:
Մարդկությունն է դառնում մի տուն, մի ընտանիք,
Ո՜վ առաջնորդ,
Բոլոր մարդկանց սիրելի հայր,
Հազարավոր սերունդների ազատարար,
Մեծ ես, հավերժ դու Մարքսի պես,
Հավերժ ես դու Էնգելսի պես,
Հավերժ ես դու Լենինի պես,
Դրոշն իր ալ մինչ արևը բարձրացնելով,
Չինաստանն է քեզ ողջունում ամբողջ սրտով:

*Նկ. Հ. ՔԱՅԱԿՅԱՆԻ*

*ԺԵՆ ՑԶՅՈՒՆ*

**ԵՐԳ ՅԱԼՈՒՑԶՅԱՆԻ ՄԱՍԻՆ**

Յալուցզյան գետը լայն է ու հստակ,
Յալուցզյան գետը խորն է, անհատակ.
Նրա աջ ափին հողն է չինական,
Ձախ ափին երկիրն է կորեական:

Ահա Անդունը, սահմանը ահա,
Ձգվում է հսկա կամուրջն երկարյա.
Այդ եղբայրական զույգ ձեռքեր են կուռ,
Որ գետի վրա ձուլվել են ամուր:

Եղբայր են եղել զավակներն արի
Մեծ Չինաստանի և Կորեայի.
Գետերն հավերժ են հոսում ու փրփրում,
Եղբայրությունն էլ դարեր է ապրում:

Կորեացի եղբայր, հորդան վայրենի
Ավերում է քո երկիրն հայրենի,
Նա սպառնում է և Չինաստանին.
Եկե՛ք մարտնչենք, հաղթենք միասին:

Յայուցզյան գետը և՛ լայն է, և՛ խոր,
Կռվի է ելել զորքը կամավոր.
Մարտում օգնելով մեր եղբայրներին,
Մենք մեր երկիրն ենք պաշտպանում կրկին:



*ԼՈՒ ՅՈՒԱՆ*

**ՄԻ ՄՈՌԱՑԻՐ**

Ո՜վ կորեացի ժողովուրդ, հիշի՛ր
Եվ մի՛ մոռացիր.
Յայուցզյան գետից միշտ ջուր է խմել
Չին ժողովուրդն էլ:
Նույն ջուրն ենք խմել դարեր ու դարեր.
Եղբայրներ ենք դուք և երկրացիներ:
Հրի ճարակ է Կորեան դառնում,
Հրդեհի, ցոլքը քո տանն է հասնում,
Շտապի՛ր, հասի՛ր, չի՛ն խիզախ զինվոր,
Հանգցրո՛ւ ռազմի բոցը ահավոր,
Որ սրաժանիք գազանն անխնա
Աշխարհն հոշոտել չկարողանա:
Կորեային ես դու օգնում կռվում,
Բայց քո հայրենի երկիրն ես փրկում:

*Թարգմ. Պ. ՄԻՔԱՅԵԼՅԱՆ*

# Խաղաղասեր ՓՈՔՐԵՐԸ ՄԵՐ

Նկ. Վ. ԳՐԻԳՈՐՅԱՆԻ

*ԱՂԱՎՆԻ*

Սրանք փոքր են, վեց տարեկան.
Պատերազմը Հայրենական
Վերջացել էր, երբ ծնվեցին:
Խաղաղության մասին, սակայն
Նրանք գիտեն ինչ-որ մի բան.
Կուզե՞ք հարցնեմ նրանց մեկին:
— Խաղաղությունն ի՞նչ է, Ռազմի՛կ:
— Թշնամին է պատերազմի:
— Իսկ պատերազմն ի՞նչ է, գիտե՞ս:
— Չէ, պատերազմ չեմ տեսել ես:
— Իսկ ես գիտեմ, թե ինչ է դա,—
Ձայն է տալիս փոքրիկ Սեդան:
— Դե՛, որ գիտես, մեզ էլ ասա...
— Երեկ ես մի քեռի տեսա,
Իսկ այդ քեռին մի ոտք չուներ:
Մայրիկն ասաց՝
Պատերազմում է կորցրել...
— Վա՜յ, շատ ափսոս,—
Ձայն են տալիս Սոսն ու Մերին:
— Իսկ դուք գիտե՞ք, Սուրիկ ու Սոս,
Պատերազմը հայրիկներին
Հավաքում է, զինվոր տանում:
— Որ այդպես է,
Ես պատերազմ չեմ ցանկանում,—
Բողոքում է փոքրիկ Աննան:
— Ես էլ, ես էլ,—
Ասում է մեր Տիգրանիկը.—
Ես չեմ ուզում, որ հայրիկը
Տնից գնա...
Բա ինձ համար էլ ո՞վ գնի
Խաղալիքներ.
Մանկապարտեզ ինձ ո՞վ տանի...
Չէ, շատ լավն է հայրիկը մեր,
Իսկ պատերազմ թող չլինի:
— Դրա համար դուք ի՞նչ կանեք:
— Խաղաղություն կպաշտպանենք:
— Բայց մենք փոքր ենք,
Նոր ենք դարձել վեց տարեկան,
Պատերազմը Հայրենական
Վերջացել էր, երբ ծնվեցինք:
— Դե, այդ ոչի՜նչ, ա՛յ մորաքույր...
Վարդան, Տիգրան, Գոհար, Պարույր,
Դուք էլ եկեք, Սուրիկ, Սեդա,
Եկեք դիմենք հայր Ստալինին.
Նա սիրում է մեզ. թույլ չի տա,
Որ պատերազմ նորից լինի:
Բայց մենք գրել դեռ չգիտենք,
Մենք մեր նկարը կուղարկենք,
Ա՛յ, հենց այսպես, խաղ անելիս,
Հետն էլ կասենք.— Հայր Ստալին,
Խաղաղություն ենք ցանկանում,
Խաղաղություն ենք պաշտպանում,
Օգնեցեք մեզ՝
Հայրիկներս տանը մնան.
Այս էլ հասցեն մեր՝ Երևան,
№ 3 մանկապարտեզ:



# ՀԱՅՐԵՆԻՔՈՒՄ

ԳՐԻԳՈՐ ՔԵՇԻՇՅԱՆ

Նկ. Լ. ԲԱՂԴԱՍԱՐՅԱՆԻ

Աշնանային հանդարտ երեկոն իջնում է Երևանի վրա: Օրորվելով թափվում են դեղին տերևները: Բնության այս հանգիստ տեսարանին հակադրվում են մարդիկ, որոնք շտապում են, ստեղծելով եռուզեռ, ոգևորություն, կյանք:

Սահակը երաժշտական դպրոցից տուն է գնում: Նրա պատանեկական ուղեղում խաղ են անում զանազան մտքեր ու եղանակներ: Նա դեռևս լրիվ չի հասկանում այդ բոլոր ապրումների իմաստը. չի կարողանում որոշել, թե իր մեջ ծագած այդ երգը ե՞րբ և որտե՞ղ է սովորել. նա հանձնվում է այդ երգին, ու շրթները մեղմ շարժելով, ցածր, ինքն իրեն երգելով իջնում է Ստալինյան պողոտայով ցած:

Նա տուն է գնում մտածելով ու հիշում է:

Այսօր դասատուն իրենց պատմեց, թե ինչպես են ապրում երեխաները արտասահմանում. ինչպե՛ս ճնշվում են նրանք, փոքր տարիքից աշխատում գործարաններում ու հիվանդանում: Նա պատմեց նաև, թե ինչպես այդ երեխաները մասնակցում են խաղաղության գործին և այն հալածանքների մասին, որոնց ենթարկվում են նրանք: Դասատուն պատմեց և Սահակը տեսավ, թե ինչպես լաց էր լինում Լևոնիկը, ինչպես հուզված աղմկում էին իր ընկերներն ու բռունցքները պիրկ սեղմում:

Սահակը ուշադիր լսում էր դասատուին, բայց իտալացի, հույն, նեգր երեխայի փոխարեն նա պատկերացնում էր իրեն:

Անցել է չորս տարի: Շատ բան է փոխվել Սահակի կյանքում. բայց նա հիշում է ամեն ինչ և երկար ժամանակ չի մոռանա...

Կիսամութ ու ցեխոտ են Բեյրութի հայկական թաղամասերը: Մի անգամ սարքված ու այլևս երբեք չնորոգված փողոցներում ջուրը տեղ-տեղ հավաքվում է ու լցվում մաշված կոշիկների մեջ: Թևի տակ ջութակը պինդ սեղմած, իրեն հանձնած տաս տարեկան Սահակի առաջնորդությանը, գնում է երաժիշտ Վարդանը: Նա կույր է: Սահակը գիտի, թե ինչպես է կուրացել հայրը. նրան պատմել են արաբական անապատների կիզիչ արևի, հայերի անօրևան թափառումների մասին: Սահակը գիտի այդ բոլորը և դրա համար էլ նա առաջնորդում է հորը և աշխատում, որ նա չընկնի ջրափոսերի մեջ, չկեղտոտի իր միակ հագուստը:

Հասնում են աշխատանքի վայրը:

— Այսօր դարձյալ ուշացար,— դռան շեմքին բղավում է սրճարանի տերը հաստ փորը դժվարությամբ առաջ մղելով և բեղերի ծայրը ոլորելով,— եթե այդպես ուշանաս ու իմ հաճախորդներին փախցնես, ես ուրիշ նվագող կբերեմ,— սպառնում է նա:

Հուզմունքից թարթվում են Վարդանի կույր աչքերը: Նա ներողություն է խնդրում, աշխատում է բացատրել, թե ինչքան ճանապարհ են եկել ոտքով, բայց սրճարանի տերը չի լսում նրան, այլ հրամայում է:

— Դե նվագի՛ր, նվագի՛ր:



Սահակը նստում է հոր կողքին, կուչ գալիս անկյունում, ու լսում է հոր մեղեդիները, այնքա՛ն քաղցր, այնքան հուզիչ: Նրան ջղայնացնում է, որ աղմկում են բոլոր կողմերում, որ ծիծաղում են բարձրաձայն, նա տեսնում է, որ դողում են հոր շրթները, ար-

ցունքը կախվում է նրա կոպերից ու իջնում է այտերի վրա: Նա ուզում է բղավել այդ մարդկանց վրա, ուզում է իր անզոր ձեռքերով խփել նրանց, ստիպել, որ հարգեն հորը և երաժշտությունը:

Սահակը բացում է իր հետ բերած դասագիրքը, փորձում է կարդալ ու չլսել այդ աղմուկը, մի պահ այդ հաջողվում է, սակայն մի ձայն նրան տեղից վեր է թռցնում:




— Հե՜յ, երաժի՛շտ, պարի եղանակ նվագիր. ես ուզում եմ պարել:

Վարդանը չլսելու է տալիս: Նա չի սիրում, որ նրան ընդհատեն, բայց մյուսը համառում է, մոտենում է կարմրած աչքերով մի անգլիացի սպա ու ցնցում է հոր ուսը:

— Հո խուլ չես, կույր սատանա. պարի եղանակ նվագիր:

Նվագը դադարում է: Մոտենում է սրճարանատերը սպառնալից: Վարդանը նրա ներկայությունը զգում է շնչառությունից ու շտապում է պատասխանել.

— Հիմա, պարո՛ն,— ասում է նա,— հիմա՛, անմիջապես...

Պարում են խելագարի նման. բղավում են այնպես, որ ոչ մի երաժշտություն չի լսվում: Սահակը նայում է նրանց լայն բացված աչքերով ու չի հասկանում, թե ի՞նչ են ուզում նրանք:

Անգլիացի սպան մոտենում է օրորվելով:

— Խմի՛ր,— ասում է նա հորը երկարելով մի լիքը բաժակ օղի,— խմիր անգլիացիների կենացը:

— Խմի՛ր, խմի՛ր,— լսվում են ձայներ չորս կողմից:

Վարդանը գիտի, որ իրեն խմել չի կարելի, որ դրանից նրա հազը սաստկանում է, բայց անգլիացին կանգնած է չռած ոտքերով ու նրան մերժել կնշանակի սրճարանատիրոջը բարկացնել: Նա վերցնում է բաժակը:

— Հայրի՜կ,— ասում է Սահակը մեղմ, զգուշացնող ձայնով,— հայրի՜կ...

— Այդ քոթոթն ո՞վ է,— հանկարծ շուռ է գալիս անգլիացին,— ու հրամայում, որ մի բաժակ ևս բերեն:

Նա ուժով լցնում է օղին դիմադրող Սահակի կոկորդից վար ու քրքջում է բարձրաձայն:

Շատ ուշ, առավոտվա առաջին ժամերին տուն են վերադառնում հայր ու որդի, ցեխոտված, հոգնած, առավել ատելությամբ լցված դեպի այդ մարդիկ:

Եվ այդպես օրեր, տարիներ, շարունակ...

Ավտոյի զգուշացնող ձայնը արթնացնում է Սահակին իր հիշողություններից: Նա տեսնում է, որ արդեն Հաղթանակի կամուրջի վրա է: Դիմացը Նոր Կիլիկիա ավանն է իր լուսավոր տներով: Այնտեղ են ապրում իրենք: Հիմա տուն կգնա: Հայրը կհարցնի այսօրվա իր դասերի արդյունքների մասին և հետո կնվագի արևելյան քաղցր մեղեդի-

ներ, հայկական անուշ եղանակներ և ինքը կընկերակցի նորը: Կհավաքվեն հարևանները, կխոսեն իրենց աշխատանքների, երջանիկ, խաղաղ կյանքի մասին ու կմոռանան, կմոռանան անցյալը:

Սահակը արագացնում է քայլերը: Ուղեղում հնչում են զանազան եղանակներ: Նա դեռևս չի հասկանում իր մեջ կուտակվող այդ երգերի իմաստը, չի կարողանում ուղղություն ու մարմին տալ դրանց, բայց մի օր նա կգրի այդ բոլորը և աշխարհին կպատմի իր հոր մասին, իր մասին, իրենց գտած երջանկության մասին: Նա անպայման կգրի...




Վ. ԱՆԱՆՅԱՆ

Նկ. Է. ԻՍԱԲԵԿՅԱՆԻ

## 1. ԱՐՋԵՐԻ ՈՐՍԸ

*Մի անգամ ադրբեջանական քոչվորները ղափանցի անվանի որսորդ Վաչագին հրավիրեցին սար՝ իրենց կոլխոզի ոչխարաբուծական ֆերման:*



*Վաչագը հանքափոր էր:*

*Շաբաթ օրը երեկոյան դեմ նա իր անբաժան ընկերների՝ Աբասի ու Հարությունի հետ սար բարձրացավ: Նրանք քնեցին ֆերմայի վրաններում: Երբ արևածագին դուրս եկան, նրանց դիմավորեցին գառների մայունը, շների հաչոցը, լեռնային մարգագետիններում փռված անթիվ-անհամար ծաղիկները և շնկշնկացող առողջարար հովը:*

*Ադրբեջանական հովիվները շատ հյուրասեր դուրս եկան: Նրանք գառ մորթեցին, պատիվներ տվին իրենց հյուրերին և երբ սրանք կշտացան, նրանցից մեկը՝ մեծ փափախը գլխին, դաշույնը կապած մի թուխ մարդ, ասաց.*

*— Գիտե՞ս քեզ ինչի ենք կանչել, Վաչագ եղբայր:*

*— Կանչել եք կարոտներդ առնեք,— կատակի տվեց Հարությունը:*

*— Այո՛, և կարոտում էլ ենք,— լրջորեն հաստատեց հովիվը:— Ոնց չկարոտես էն մարդուն, որը մեզ հետ անկեղծ բարեկամ է: Կանչել ենք, որ համ հին աղ ու հացը նորոգենք, համ էլ խնդրենք, որ ֆերման ազատես մի պատուհասից:*

— Ի՞նչ պատուհաս։

— Ա՛յ Վաչագ քիրվա[1]), մի կաղ արջ մեր կողմերում օրը ցերեկով մարդի պես փայտը կռնատակին դրած գալիս է ոչխարը խտտում, տանում քարափից վար գցում, էլի գալիս տանում վար գցում ու թողնում մի կողմի վրա փախչում։ Շներով, մարդկանցով վազ ենք տալիս գնում քարափի տակը, որ գոնե սպանված ոչխարները բերենք, գնում ենք տեսնում ոչ մեկը չկա։

— Ո՞նց թե չկա։ Ա՞րջն է տանում։

— Չէ, արջը ոչխարները շուտ-շուտ քարափից գցում է ու ինքը փախչում-գնում դիմացի ծմակը։ Մի հրաշք բան է, ինչո՞ւ է գցում, ո՞ւմ համար է գցում՝ չենք հասկանում։

— Լավ, մենք կպարզենք։



Այդ օրը երեք ընկերներով զինված շրջում էին ֆերմայի հոտի հետ։ Հոտն իջավ անտառի եզրի բարձր ժայռերի վրա։ Վերևից ժայռ չի երևում, տափարակ է։ Բայց եթե այդ տափարակից ցած նայես՝ կփշաքաղվես. ներքևում ծառերի ու թփերի մեջ կորած ձորն է։

Ամբողջ օրը շրջեցին արածող հոտի հետ՝ արջերը չկան ու չկան։

— Թփերի ետևից գաղտնի մտիկ են անում, հրացանները տեսնում, հասկանում են, որ որսկան ենք.— բացատրեց Վաչագը։— Եկեք զենքներս պահենք։

Նրանք հրացանները պահեցին թփերի տակ ու հետևեցին հոտին։ Քիչ անց լսվեց հովվի կանչը.

— Վաչագ եղբա՜յր, Վաչագ եղբա՜յր…

Որսորդները վազեցին ձայնի ուղղությամբ և ինչ տեսան։ Մի կաղ արջ երկու ոտքի կանգնած, ոչխարը գիրկն առած լընգլընգալեն գնում դեպի ժայռի պռունկը։ Մարդիկ հարայ-հրոց գցեցին, շները վրա հասան արջի շալակը թռան։ Իսկ նա՝ հանգիստ գնում է։ Որ շատ նեղեցին, արջը իր բեռը ցած դրեց, թաթերով դես-դեն շպրտեց շներին և ոչխարը նորից գրկելով, երկու ոտքով գնաց հասավ ժայռի պռնկին ու այնտեղից ցած նետեց իր բեռը։ Ցած նետեց, գոռաց շների ու մարդկանց վրա ու նա եկավ մի ոչխար էլ գրկեց։ Որսորդության շատ հեշտ միջոց էր գտել. քանիսը ցած նետես՝ քոնն է. միայն աշխատիր շուտ-շուտ բռնել՝ ցած շպրտել…

— Աբա՛ս, վազիր հրացանները բեր,— գոչեց Վաչագը տեղում եփվելով։

Բայց մինչ Աբասը տեղ կհասներ, արջը արագ-արագ ոչխարներին նետեց ժայռից ցած ու կաղալով փախավ մի ուրիշ կողմ։ Սա ի՞նչ հանելուկ է, ինչո՞ւ չի գնում իր որսին տեր կանգնի։

Որսորդները վազելով իջան ժայռերի տակ… Այ քեզ բան, միայն մի ոչխար է ընկած, մնացածները չկան։ Ո՞ւր կորան, ոտք չունեն՝ փախչեն, թև չունեն՝ թռչեն։

— Ծառերի ետև տապ արեք ու ձայն չհանեք,—կամաց կարգադրեց Վաչագը։ Երեքն էլ թաքստոցում շունչները պահած սպասում էին։ Մեկ էլ ներքևում, ձորի հատակի թփերը շարժվեցին, խշրտոց լսվեց ու տերևների միջից մի քոթոթի գլուխ երևաց։ Նա օդը հոտոտեց և ոչինչ չկասկածելով, թփուտից դուրս եկավ ու անճոռնի վազքով գնաց դեպի ժայռի տակ ջախջախված ոչխարը։ Հասավ, գրկեց, որ տանի՝ ուժը չի պատում։ Ցածր ձայնով ազդանշան տվեց։ Մեկ էլ որտեղից որտեղ մի ուրիշ քոթոթ հայտնվեց։ Եկավ, չգիտես ինչու եղբոր գլխին թաթով բամփեց. երևի նախատում էր, թե՝ դա ինչ է, որ մենակ չես կարողանում տանել։ Հետո երկուսով, մեկը ոչխարի գլխից, մյուսը ոտքերից բարձրացրին ու տարան դեպի ձորը։

[1]) Քիրվա — բարեկամ։

Որսորդներն իրար երես նայեցին։

— Տեսնո՞ւմ եք, ոնց է վարժեցրել քոթոթներին,— կամաց խոսեց Վաչագը։

— Իսկ ինքն ինչո՞ւ չի երևում,— հարցրեց Հովիվը։

— Ուրիշ կողմի վրա է փախչում, որ ետևից գնանք, իսկ քոթոթները թալանը տանեն տեղավորեն...

— Դե շուտ գնանք խլենք,— ասաց Աբասը։

—Չէ, թող տանեն տեղավորեն։ Մեկ է, հիմա չեն ուտելու։

Երբ ներքևում խշրտոցը դադարեց, որսորդները ցած իջան, խուզարկեցին թփուտները և գտան արջերի «շտեմարանը»։ Քարից ցած գցված բոլոր ոչխարներն էլ այդտեղ խնամքով իրար վրա դարսված էին։

## 2. ԹՅՈՒՐԻՄԱՑՈՒԹՅՈՒՆ

Երբ արջը տեսավ, որ իր գաղտնիքը բացված է և հրացանավոր մարդիկ են երևացել, որոնք հետապնդում են իրեն, քոթոթների հետ հեռացավ ֆերմայի սահմաններից։ Բայց աշնանը այդ նույն արջը զոհ գնաց մի թյուրիմացության։

Դեպքը կատարվեց Վաչագի և իր ընկերների աչքի առաջ։

Մեր հանքագործ որսորդները սովորություն ունեին իրենց հերթական արձակուրդն ստանալ աշնանը՝ որսի լավ ժամանակ։ Այս անգամ էլ նրանք հոկտեմբերին արձակուրդ ստացան։ Ցերեկը որս էին անում, գիշերը ուր մթնում էր, խարույկի մոտ, թափված տերևների վրա, քնում։

Մի անգամ էլ Խուստուփի անտառոտ լանջին մի զարմանալի տեսարան բացվեց նրանց առաջ։ Ահա մի ահագին հովազ մի վարազ է դրել իր տակն ու ագահությամբ հոշոտում է։ Նրանից քիչ դենը, մի մայր արջ խեղճ-խեղճ կանգնած համեստորեն սպասում է, թե երբ պետք է հովազը վերջացնի իր նախաճաշը և հեռանա, որ մնացորդն էլ ինքն ուտի։

Արջից ներքև, թփերի մեջ ականջներն առաջ թեքած երկու գլուխ երևացին։ Քոթոթներն են. թաքնված սպասում են իրենց մոր հրամանին։ Մայրը չի շարժվում. գաղտագողի նայում է հովազին ու համբերությամբ սպասում։ Հովազը շատ խոշոր էր, Իրանից Արաքսն անցած այն գիշատիչներից, որոնք կոտորում են մեր քարայծերին, եղնիկներին ու նորից վերադառնում Իրան, իսկ արջը փոքր տեսակիցն էր։

Որսորդները նայում էին իրենց թաքստոցից։ Արջը մի քանի քայլ առաջ եկավ։

— Ֆերմայի արջն է, տե՞ս կաղում է,— շշնջաց Աբասը՝ հրացանը մեկնելով։— Խփենք,— շշուկով առաջարկեց նա։

Վաչագը նայում էր թփերի մեջ իրենց մորն սպասող քոթոթներին ու տատանվում էր։

— Արջ մեզ մոտ շատ կա, հովազին խփենք,— ելքը գտավ նա։

Նշան բռնեցին երեքով, բայց Վաչագը հայացքով սաստեց ընկերներին, որ իրեն չխանգարեն և կրակեց գազանի վրա։ Հովազը շանթահարված ցատկեց օդում և կարծելով, թե արջն էր իրեն հարվածողը, ցավից խելագարված թռավ նրա մեջքին, իր հզոր ժանիքները խրեց նրա կոկորդը ու սկսեց գզել։ Արջ ու հովազ իրար խառնված լանջով գլորվում էին դեպի ցած։ Այդ օրհասական գոտեմարտի մեջ մեկ արջի թուխ մարմինն էր երևում, մեկ հովազի չալ, հուրհրատին տվող մորթը։ Այդ թուխի և չալի խառնուրդը գլորվելով հասավ թփերին, ճյուղերը ջարդվեցին, թփուտն ալեկոծվեց։ Իրենց մորն այդ վիճակում տեսնելով, ձագերը դուրս պրծան իրենց թաքստոցից և սարսափահար փախան։

Քիչ անց թփուտը հանդարտվեց։ Այնտեղից շրթունքները լիզելով դուրս եկավ հովազը և արյուն տալով քայլեց դեպի անտառի խորքը։ Շատ էր արյուն կորցրել, ուստի խիստ ծարավել էր. գնում էր դեպի առուն։

Թփերից դուրս էր մեկնված արջի անշարժ ոտքերից մեկը։ Խեղճ կենդանին այդպես թյուրիմացության զոհ գնաց։

Ծառերի ետևով մեր որսորդները գաղտագողի հետևեցին հովազին։ Նա ջարդված հազիվ քարշ գալով հասավ առվին, ջուր խմեց, շուռ ու մուռ եկավ թափված տերևների վրա ու նրա ոտքերն սկսեցին ջղաձգորեն ցնցվել...

Դա էլ մի հաջողություն էր. մի կրակոցով և՛ հովազ տարան տուն, և՛ արջ, և՛ վարազ...

## Հ Ա Յ Ր Ե Ն Ի Ք

Իմ խաղաղասեր Հայրենիք խնդուն
Վերքով էր լցված պատմությունը քո,
Իմ ժողովուրդը ննջվում էր անտուն
Անարգ թշնամու բռնության ներքո:

Բայց երբ այն օրը մեծ Հոկտեմբերյան
«Ավրորայի» վեն համազարկն հնչեց,
Եվ իր անարկու ձայնով հաղթական
Մեր այս աշխարհին նոր կյանքի կոչեց,

Դու ազատվեցիր դարավոր լծից,
Քայլեցիր ազատ դեպ կյանքը ծաղկուն,
Եվ հազարամյա վիշտդ դառնալից
Թաղեցիր քո հին պատմության գրկում:

Այսօր խնդության ջերմ արևի տակ
Մեծ եղբայրական մի ընտանիքում,
Ծաղկում ես դու մեր դարում անխորտակ,
Սիրում լույսի պես ներմակ աղավնուն:

Իմ վերածնված ազատ Հայրենիք,
Երգով է լցված պատմությունդ նոր,
Կերտում ես անպարտ վառ ու երջանիկ
Քո լուսանանանչ գալիքը հզոր:

ՌՈԲԵՐՏ ԿԱՐԱՊԵՏՅԱՆ

(Երևանի № 51 դպրոցի 9-րդ
դասարանի աշակերտ)






Ս. ՕՐԲԵԼՅԱՆ

Նկ. Կ. ՀԱՅԱԴՈՐՃՅԱՆԻ

Ավելի քան երեք հարյուր տարվա պատմություն ունի Քաջարան գյուղը, բայց այնտեղ մի վայրի ծառ անգամ չէր աճում:

Սրանից ութ տարի առաջ, Ղափանի ինտերնացիոնալ միջնակարգ դպրոցի պիոներների պահանջով գյուղատնտես Օնիկը մի օր զեկուցում կարդաց Միչուրինի կյանքի ու գործունեության մասին: Երբ զեկուցումը վերջացավ, քաջարանցի պիոներ Համոն շրջապատեց փայտահանցի Մուսայի ականջին.

— Ինչ որ ասում էիր իսկական տեղն է, Լարցնենք ագրոնոմից:

Առաջինը խոսեց Համոն:

— Քաջարանում կանե՞ն արդյոք միչուրինյան մրգի ծառեր,— հարցրեց նա:

— Ինչու չէ:

— Ախր մեր պապերը շատ են փորձել, բան դուրս չի եկել:

— Միչուրինի հետևորդներն ստացել են խնձորենու այնպիսի սորտեր, որոնք աճում են Անդրուրալյան և Սիբիրի շրջանների դաժան կլիմայի պայմաններում,— վստահ տոնով ասաց գյուղատնտեսն ու խոստացավ անձամբ օգնություն ցույց տալ:

Մի քանի օր հետո Համոն Դավիթ բեկ գյուղի Ստալինի անվան կոլխոզից գյուղ տարավ խնձորենու, տանձենու, կեռասենու և բալենու միչուրինյան տնկիներ: Չնայած Ղափանում ծառատունկը վերջացել էր, բայց Քաջարանում դեռ ձյուն կար: Նա տնկիների արմատները թաղեց հողի մեջ, որ չցրտահարվեն:

Վրա հասավ գարունը, Համոն եռանդուն կերպով աշխատում էր, ցանկապատում պարտեզը, հերկում հողը, նորից փափկացնում:

— Համո՛, բա ծառերը ե՞րբ ես տնկելու,— հարցնում էին կոլխոզնիկները:

— Սպասում եմ ագրոնոմ Օնիկի խորհրդին:

— Խորհուրդը չի օգնի, դրանից բան չի դուրս գա...— Կապուտջուղի բարձունքնե-

րին ամբարված ձյանը նայելով բերահավա-տորեն ասում էին ծերունիները:

Վերջապես գյուղատնտեսը եկավ դիտեց Համոյի կատարած աշխատանքը, ստուգեց տնկիների վիճակը և հարցրեց նրան.

— Ինչո՞ւ ես տնկիների տեղը շուտ փո-րել:

— Որ անձրևաջուրը լցվի մեջը, խոնա-վություն շատ կուտակվի:

— Իսկ ցանկապատի մի կողմը ինչո՞ւ է բարձր:

— Որպեսզի սարից փչող ցուրտ քամին չվնասի տնկիներին:

Գյուղատնտեսը նշաններով ցույց տվեց. թե պարտեզի որ մասում պետք է տնկեր խնձորենին, տանձենին, որ մասում բալե-նին, մեկն էլ տնկել տվեց իր ներկայությամբ ու գնաց:

Համոն չէր մոռանում իր պարտեզի տնկիների խը-նամքը: Երբ գյուղից մի քանի օրով բացակայում էր, գործը հանձնարարում էր փոքր եղբորը՝ Էդիկին:

Համոյի պարտեզի բո-լոր տնկիները բռնեցին և աճեցին: Տնկելու օրվանից հաշված, երրորդ տարում ծաղկեցին խնձորենիները և բալենիները:

«Տեսնես բերք կտա՞ն...» հուզմունքով ինքն իրեն ասում էր արդեն կոմերիտական Համոն և ամեն առավոտ ստուգում ծաղիկ-ների վիճակը:

Մի օր Սև քարի գագաթին ամպ երևաց: Այդ նշան էր, որ այդ օրը հորդ անձրև պի-տի տեղա և կարկուտ վտանգ կա: Համոն գտնվում էր սարում՝ կոլխոզի ֆերմայում: Տանը մարդ չկար: Իրոք, որ անձրև ու կար-կուտ տեղաց:

Եվ Համոն մորից շուտ հասավ գյուղ ու ամեն մի ծառը մի որևէ բանով ծածկեց: Վերջին խնձորենին էլ ստիպված եղավ սե-ղանի սփռոցով ծածկել...

Այդպես, Համոն ծաղիկների մի մասը փրկեց: Շուտով միչուրինյան տունկերի վրա սկսեցին աճել առաջին պտուղները:



Մի օր մենք հյուր եղանք Քաջարան գյուղում: Մեզ հետ էր նաև այդ գյուղացի գնդապետը: Նա երեսուն տարի գյուղում չէր եղել: Նախագահի տան մոտ մեզ կանգնեց-րեց մի պատանի և դիմեց գնդապետին:

— Ընկե՛ր Սահակյան, համեցեք մեր պարտեզը:

— Ի՞նչ պարտեզ:

— Միչուրինի հետևորդների պարտեզը:

Քիչ անց մենք Համոյի պարտեզում էինք:

— Օգոստոսի վերջին այսքան վա՞րդ,— զարմացավ գնդապետը:

— Վարդերի մասին բան չեմ ասում,— ասաց Համոն: Իսկ գիտեք, որ Կափանում վարդը վերջանում է մայիսին, իսկ մեզ մոտ բացվում է հուլիսին կամ օգոստոսին:

— Հրաշալի՜ է:

Վարդերի փունջը ձեռքին գնդապետը մոտեցավ բալի ծառին:

— Քաջարանում բա՞լ, խնձո՞ր...— ասում էր նա հիացմունքով:

— Խնձորենիները չորս տարեկան են, տանձենինե-րը յոթ,— շարունակում էր իր բացատրությունները Հա-մոն:— Հիմա ձեզ կհրամցնեմ:

— Տեսնո՞ւմ եք այս տղային,— շարու-նակեց Համոն, ցույց տալով մի պատանու, որը կանգնած էր պարտեզի մուտքի մոտ,— սա էլ մեր հարևան ադրբեջանական գյուղի միչուրինականներից է՝ Մուսան: Սա առաջի-նը աճեցրեց կեռասը: Այժմ նրա օրինակով Գեղվաձորի ինը գյուղում կեռասի բերք են ստանում: Նրա ընկեր փիրիվերդի Ալին էլ դեղձ է աճեցրել: Նրանք այցելում են մեզ, ուսումնասիրում խնձորենու մեր պարտեզը, մենք էլ լինում ենք նրանց մոտ: Այս կեռասը Մուսան է բերել իր պարտեզից:

Ադրբեջանցի ու հայ պատանի միչուրի-նականների բարեկամությունը գնդապետին շատ ուրախացրեց: Նա ջերմորեն գրկեց Հա-մոյին ու Մուսային:

Մենք կշռեցինք կեռասը, բալը և խնձո-

րը: Կեռասի մի հատը 4 գրամ էր, բալինը՝ 3,5 գրամ, Ղափանի բալից 0,5 գրամ ավելի, «Անտոնովկա» խնձորի մի հատը օգոստոսի 26-ին կշռեց 300 գրամ:

Լեռնային այդ կեռասը և բալը շատ դիմացկուն են, քաղած վիճակում 10 օր մնում են, իսկ խնձորը մի տարի է դիմանում:

Այսպիսով, պատանի միչուրինականներ Համոն և Մուսան առաջինը ապացուցեցին, որ Կապուտջուղի լանջերին, որտեղ իրենց պապերը կաղնի ծառ անգամ չեն տեսել, կարելի է անեցնել միչուրինյան խնձորենի, տանձենի, բալենի և կեռասենի:



## ԱՄԵՆԻՑ ԼԱՎԸ

*ՀԱՐ. ՄԵՐՈՒԺԱՆ*

Թոռնիկները թռվռալով
Ներս վազեցին քրտնած.
Աղմկում են, ծափին տալով,
Պապի չուրջը բոլորած.
— Պապի՛ ջան, տես, մեր մեծ բակում
Ծառ ենք տնկել, ո՞ւմն է լավ.
— Ես՝ նշի ծառ,
— Ես՝ ծիրանի,
— Ես՝ թթենի,
— Իսկ ես՝ բալ,
— Ես, պապի ջան՝
Հինգ եղեվնի,
Որ միշտ անենք
Տոնածառ:
Պապն հրճվանքով գրկեց, ժպտաց,
Ջերմ համբուրեց ու ասաց.
— Լա՛վն է, լա՛վն է, անուշ բալեք՝
Նուշն էլ, թութն էլ և բարդին,
Բայց ամենից լավն, իմացեք՝
Աշխատանքն է ձեր անգին:

## ՖՈՒՏԲՈԼ

*ՄԻՔ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ*

Բոլորն էլ սիրում են ֆուտբոլը,
Բայց ինչո՞ւ Գուրգենը չսիրեց.
«2» են ստացել այն օրը
«Դինամոն» և ինքը՝ խնդրեմ:

«Դինամոն»՝ դաշտի մեջ մրցության,
Իսկ ինքը՝ դպրոցում: Ի՞նչ անել.
Ա՛յ, թե ինչ. մեկին շատ դաշտ գնալ,
Մյուսին այդ դաշտում քիչ լինել:





# Ռուսական ՀՐԵՏԱՆՈՒ ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆԻՑ

Մ. ՄԱԴԱԹՅԱՆ

Նկ. Ա. ՉՈՐՊԱՃՅԱՆԻ

Ռուսական հրետանու ստեղծողը համարվում է իշխան Դմիտրի Դոնսկոյը: Նրա օրով, շատ կարճ ժամանակում սկսեցին թնդանոթներ ձուլել Ռուսաստանում:

Առաջին թնդանոթները ձուլում էին կոփած երկաթից և ամրացնում փայտե հենարանի վրա: Արկի փոխարեն օգտագործում էին երկաթի կտորներ կամ քարեր:

1552 թվին Իվան Ահեղ ցարը կարգադրեց ձուլել 150 ծանր թնդանոթ, պաշարեց Կազանը, խորտակեց այդ ամրոցի պարիսպները և գրավեց քաղաքը:

Իվան Ահեղի ժամանակ էր ապրում ռուս հայտնի թնդանոթ ձուլող Անդրեյ Չոխովը: Նա ձուլեց բազմաթիվ թնդանոթներ: Նրանցից մեկը կոչվում է «Ցար պուշկա», այսինքն՝ թնդանոթների թագավոր:

Չոխովն այս թնդանոթը ձուլել է 1586 թվին, Ֆեոդոր Իվանովիչ ցարի հրամանով: Սկզբում դրված էր Մոսկվայի Կարմիր հրապարակում: Սա մինչև հիմա էլ համարվում է աշխարհի ամենամեծ թնդանոթը: Նրա կալիբրը (փողի տրամագիծը) հավասար է 790 միլիմետրի: Ժամանակակից ֆրանսիական ամենախոշոր հրանոթներն ունեն 520 միլիմետր տրամագիծ:

«Ցար պուշկա»-ն կշռում է 39.350 կիլոգրամ: Նրա ամեն մի քարե գունդը 850 կիլոգրամ է, իսկ թուջե գունդը՝ 965 կիլոգրամ:

Այս հսկայական թնդանոթը պատերազմում երբեք չի գործադրվել: Գիտնականները հաշվել են, որ կրակելուց այդ թնդանոթի պատերը ոչ մի լիցքի չեն դիմանա և նրա փողը կպայթի:

Հետագայում «Ցար պուշկան» Կարմիր հրապարակից տեղափոխեցին Կրեմլ: Այնտեղ էլ գտնվում է մինչև այժմ:

* * *

Պետրոս առաջինը դեռ շատ փոքր էր, երբ վախճանվեց նրա հայրը: Պետրոսը ցար դարձավ: Իհարկե նա միայն անունով էր ցար, իսկ պետությունը ղեկավարում էր նրա մեծ քույրը՝ Սոֆիան: Պետրոսը ապրում էր Մոսկվայից քիչ հեռու գտնվող Պրեոբրաժենսկոյե գյուղում: Այստեղ հարևան տղաների հետ նա խաղում էր, զբոսնում և ժամանակն անցկացնում այնպես, ինչպես որ ինքն էր ուզում:

Պետրոսը փայտե մի փոքրիկ թնդանոթ ուներ, որը կրակում էր փայտե գնդակներ: Այդ խաղալիքը երեխաներին շատ էր դուր գալիս: Երեխաները լսել էին, որ կան հրետանավորներ, որոնք գիտեն հրաձգության բոլոր գաղտնիքները: Դրանք բոմբարդիրներն էին: Տղաները սկսեցին հենց այդպես էլ անվանվել:

Ճիշտ է այս փոքրիկ «բոմբարդիրները» իսկական թնդանոթ երբեք չէին տեսել, բայց այդ նրանց բոլորովին չէր շփոթում:

1689 թվի մայիսի 30-ին Պետրոսի ծննդյան օրը կազմակերպեցին հրաձգություն իսկական թնդանոթներից: Եվ ահա Պետրոսը հայտարարեց, որ ինքը ուզում է կրակել: Սկսեցին համոզել և խնդրել Պետրոսին, որ նա հրաժարվի այդ ցանկությունից: Բայց Պետրոսը ոչ ոքի չլսեց: Նա վերցրեց այրվող պատրույգը, մոտեցավ թնդանոթին և կրակեց:

Այդ օրից սկսած Պետրոսը շատ էր հետաքրքրվում հրետանային գործով: Նա սիրեց վառոդը, սիրեց պայթուցիկ նյութերը: Սովորեց հրթիռներ արձակել:



Այդ նույն թվին, Պետրոսը, Պրեոբրաժենսկոյե գյուղում կազմակերպեց իր զվարճալի գունդը: Առաջինը ներկայացավ քսան տարեկան ձիապան, հաղթ Բուխվոստովը: Պետրոսն այնքան ուրախացավ, որ անմիջապես հրամայեց ձուլել Բուխվոստովի բրոնզե կիսանդրին:

Պետրոսն իր գնդի համար պահանջեց ոչ միայն թմբուկներ, փողեր, նետեր, աղեղներ և նիզակներ, այլ նաև թնդանոթներ: Այդ թնդանոթները փչացած էին: Բայց Պետրոսը տղաների հետ դրանք վերանորոգեց:

Եվահա սկսվեցին ռազմական պարապմունքները: Ամեն ինչ լավ էր ընթանում: Բայց «ռմբարձիրները» կրակում էին առանց հաշվումների: Իսկ թե ինչպես էին կրակում իսկական ռմբարձիրները, այդ մասին Պետրոսը ոչինչ չգիտեր և ոչ ոքից էլ հարցնել չէր կարող:

Պետրոսն աշխատում էր ինքնուրույն կերպով գտնել հրետանային ճիշտ կրակի գաղտնիքները: Նա մի առանձին տետրում գրանցեց այն բոլոր կանոնները, որ իմացավ Մոսկվայի մի արհեստավորից: Հենց այս տետրում էլ նա սկսեց յուրաքանչյուր կրակոցի ժամանակ գրանցել, թե ինչպես էին թնդանոթներն ուղղված և որքան հեռու էին ընկնում արկերը:

Երբ լրացավ Պետրոսի տասնյոթ տարին, նա սկսեց ինքը ղեկավարել երկիրը: Բոլորը մտածում էին, որ Պետրոսը կթողնի իր ռազմական խաղերը: Բայց Պետրոսն ինչպես և առաջ, մտերմություն էր անում իր ռմբարձիրների հետ: Նրանց հետ գնում էր հեռավոր արշավների, կազմակերպում էր «փորձնական ճակատամարտեր»: Այսպիսով «Զվարճալի գնդերը» ամրապնդվում էին: Նրանք հետագայում դարձան Ռուսական բանակի լավագույն գնդերը:

Թյուրքիայի դեմ մղած պատերազմում մասնակցում էին նաև Պրեոբրաժենսկոյե ռմբարձիրական վաշտի մարտիկները:

Երիտասարդ հրետանավորները 1696 թվի ամռանը հասան իրենց նպատակին: Թյուրքական կայազորը պարտվեց: Ռուսները գրավեցին Ազով ամրոցը:

Այսպիսով փոքրիկ ռմբարձիրները արդարացրին այն կոչումը, որ ընտրել էին իրենք իրենց համար դեռ մանկության օրերին:

Ռուսական հրետանու ծաղկումը սկսվում է Պետրոս առաջինի օրերից: Հրետանու համար Պետրոսը մտցրեց մի քանի կանխամտածված և սահմանափակ կալիբրներ: Սահմանեց հրանոթների սերիական թողարկում: Պակասեցրեց հրանոթների կշիռները, որով մեծացավ հրանոթի շարժունակությունն ու մանևրայնությունը մարտի ժամանակ: Պետրոսը հրետանին բաժանեց՝ գնդային, դաշտային, ամրոցային և պաշարողական հրետանիների:

Կես դար անց ռուսական հրետանին արդեն որոտում էր Պրուսական դաշտերում: Հրետանին հատկապես շատ մեծ նշանակություն ունեցավ Նարվայի և Պոլտավայի ճակատամարտերի ժամանակ:

1790 թվին Սուվորովի ժամանակ արդեն հրետանին համարվում էր պատերազմի հզոր միջոց: Թյուրքական Իզմաիլ ամրոցի գրավումը վերագրում են բացառապես ռուսական հրետանուն:

Սովետական իշխանության տարիներին ռուսական հրետանին ավելի հզորացավ, դարձավ աշխարհում առաջինը: Նրա հուժկու համազարկերից հիտլերյան զավթիչները տապալվեցին Ստալինգրադի տակ. Սովետական փառապանծ հրետանին իր բազմահազար փողերով որոտաց Բեռլինի վրա և սալյուտով ամբողջ աշխարհին ազդարարեց մեր Հայրենիքի փայլուն հաղթանակը:



# ՉԱՅՐՎՈՂ ԳՈԳՆՈՑՆԵՐ

*Բ. ԹԱԴԵՎՈՍՅԱՆ*

Եթե դուք լինեք մետաղաձուլական գործարանում, կտեսնեք որ հնոցի մոտ աշխատող բանվորները օգտագործում են սպիտակ ձեռնոցներ և գոգնոցներ: Դրանք բանվորներին պաշտպանում են այրվածքներից, շիկացած երկաթի ցայտեր բռնելու ժամանակ:

Այդ գոգնոցների ու ձեռնոցների թելերն իրենց նրբությամբ և փայլով նման են մետաքսի թելերին, բայց հյուսված են քարի բյուրեղներից: Քարից հյուսված այդ թելերը տարօրինակ հատկություններ ունեն, կրակում չեն այրվում: Երբ այդ հյուսվածքները կեղտոտվում են, մաքրելու համար այդ նետում են կրակի մեջ: Կեղտն այրվում է, իսկ հյուսվածքը՝ ոչ:

Անցյալում այդ քարը մարդկանց զարմանք է պատճառել: Օրինակ՝ մի գիտնական գրել է. «Գործվածքների համար կա մի քար, որը բուսնում է Հնդկաստանի օձաբնակ անապատներում, որտեղ անձրևներ չեն լինում: Այդ քարը սովորել է շոգում ապրել»: Սա, իհարկե, միամիտ բացատրություն է: Այժմ գիտությունը պարզել է, որ այդ քարը պատահում է ամենուրեք և շոգի ու ցրտի հետ ոչ մի կապ չունի: Դա ասբեստն է՝ օձաքարը կամ ինչպես գիտնականներն են կոչում սերպանտինիտը: Հնում այդ քարից մարդիկ իրենց առաջնորդների համար շապիկներ էին պատրաստում, երբ մահվանից հետո պետք էր լինում նրանց այրել խարույկի վրա: Ասբեստից հյուսված

պարկում դիակն այրվում էր ու նրա մոխիրը չէր խառնվում խարույկի մոխրին:

Հարյուր տարի սրանից առաջ մի գյուտարար, իր տիրոջը զարմացնելու համար, փայտից տնակ շինեց, տաշեղով լցրեց և հրդեհեց: Տաշեղն այրվեց, իսկ տախտակե տնակը անվնաս մնաց: Խորամանկ գյուտարարը տան պատերը պատել էր ասբեստով:

Այժմ ասբեստը հսկայական տեխնիկական և տնտեսական նշանակություն ունի:

Ասբեստի նուրբ թելերի խուրձը մշակման ենթարկելով, շատ հրադիմացկուն հյուսվածքներ են հյուսում, ինչպես օրինակ՝ թատրոնների վարագույրներ: Չէ՞ որ բեմում էլեկտրական շատ սարքավորումներ կան և հրդեհներ կարող են պատահել: Հենց բեմում ծագած հրդեհը դահլիճ չանցնելու համար էլ օգտագործում են այդ վարագույրները:

Ասբեստից պատրաստում են ավտոմեքենաների չայրվող արգելակներ, չայրվող թուղթ, հագուստ, և այլն:

Այժմ բոլոր երկրներում տարեկան արտադրում են 500.000 տոննայից ավելի ասբեստ, բայց եղած պահանջների համեմատ, դա շատ քիչ է: Ժամանակակից արդյունաբերության բազմաթիվ բնագավառներում նա անփոխարինելի է: Օրինակ՝ հրշեջային խողովակներ, մետաղաձուլարանում աշխատողների զգեստներ, տանկերի ներքին սարքավորումներ պատրաստելիս և այլն: Հրաշալի հյուսվածքներ են պատրաստում և ապակուց, բայց այդ հյուսվածքները կրակից ճեշտությամբ հալվում են և ասբեստին փոխարինել չեն կարող:

Այդ հրաշալի քարը մեր երկրում առաջին անգամ գտնվել է 1720 թվականին Ուրալի այժմյան Սվերդլովսկ քաղաքի մոտ:

Ռուս գիտնական Սեվերգինը այսպես է նկարագրում ասբեստի արտադրությունը մեր երկրում հին ժամանակ՝ «Սկզբում ասբեստի հանքաքարը ծեծում էին ու լվանում. փշրանքը ջրի հետ գնում էր. մնում էր նուրբ թելերի խուրձը, որ կոչվում էր լեռնային վուշ: Այդ վուշը հյուսում էին իսկական վուշի անեշան քանակության հետ: Իսկական վուշը հեշտացնում էր ասբեստի հյուսումը իրար հետ կապելով նրա համեմատաբար կարճ թելերը:

Հյուսելուց հետո այրելով հեռացնում էին իսկական վուշը և ստացվում էր ասբեստի հկուն ու դիմացկուն մի հյուսվածք, որը կեղտոտելիս լվանում էին շիկացնելու միջոցով»:

Այժմ կան խոշոր և կատարելագործված գործարաններ, ուր լեռներից բերված ասբեստից պատրաստում են այդ հրաշագործ վուշը:




Նկ. Ռ. ՏԵՐ-ՀՈՎՀԱՆՆԻՍՅԱՆԻ

*Հայրենական Մեծ պատերազմի տարիներին թշնամու քողարկված լրտեսները՝ միմյանց հետ խոսում էին «վարդ», «մանուշակ» պայմանական անուններով: Սակայն զգոն և հեռատես սովետական հետախույզները չէին մոլորվում ո՛չ թաքնված թշնամու խոսքերից, և ո՛չ էլ ծաղիկների ու վարդերի անուններից ու մեկը մյուսի ետևից, մերկացնում էին թշնամիներին:*

*Ահա, այս թեմայով է գրված Ստ. Կուրտիկյանի «Հետախույզները» պատմվածքը, որը զետեղված է հեղինակի նոր լույս տեսած համանուն գրքույկում:*

*Մի ուրիշ պատմվածքում հեղինակը նկարագրում է Թեոդոսիայի բնակիչ, կոմերիտական հայ պատանի Հարրի Մարտիրոսովի հերոսական սխրագործությունը: Մարտիրոսովը թարգմանչի պաշտոնով սկսում է աշխատել թշնամու շտաբում, և այնքան հաջող, որ շրջապատի մարդկանցից ոչ ոք չի կասկածում նրա ով լինելու մասին: Նա կարևոր տեղեկություններ է հաղորդում Սովետական Բանակի հրամանատարությանը գերմանական զորքերի մասին: Մարտիրոսովին մատնում են և նա հերոսաբար զոհվում է: Մարտիրոսովի մեծադիր նկարը այժմ փակցված է Թեոդոսիայի թանգարանում: Նկարի տակ այսպիսի մի մակագրություն կա.*

*«Սուր կերպով մատնվել է և գազանային տանջանքներից հետո, ոչ մի խոսք չասելով դահիճներին, 1944 թվին գնդակահարվել է քրոջ հետ միասին»:*

*Հետաքրքրությամբ են կարդացվում նաև ժողովածուի «Սովորական պատմություն», «Եսա» և ուրիշ պատմվածքներն ու ակնարկները:*

ԱՐՄ. ԹԱՄԱԶՅԱՆ

Խոսք Ղ. ՎԱՐԴԱՆՅԱՆԻ

# ԽԱՂԱՂՈՒԹՅԱՆ ԱՂԱՎՆԻՆ

Երաժշտություն՝ Ա. ՄԱՂՈՒՆՅԱՆԻ

Քայլերգանման

Սավառնում է լայն թևերով
Հեզ ու ճերմակ աղավնին,
Ու սփռում է անհուն սիրով
Խաղաղություն աշխարհին:

*Կրկներգ.*— Ջա՜ն, ինչ լավ է ապրել ազատ
Արևի տակ կենսատու,
Ջա՜ն, հայրենիք մեր հարազատ
Արևից էլ ջերմ ես դու:

Մեծ Ստալինն է խաղաղության
Առաջնորդը աշխարհում,
Նա բերում է ողջ մարդկության
Երջանիկ կյանք ու գարուն:

*Կրկներգ.*— Ջա՜ն, ինչ լավ է... և այլն:

# ՀԵՏԱՔՐՔԻՐ ԺԱՄԱՆՑ




### *ԿՈՄԲԱՅՆԻ ԸՆԹԱՑՔՈՎ*

Կոմբայնի ընթացքով ուղղանկյուն դաշտում շարժվելով՝ կարդացեք ամերիկացիներից 11 տարի առաջ՝ 1868 թվին աշխարհում առաջին գյուղատնտեսական կոմբայնը հնարող ռուս գյուտարարի անունը, հայրանունը և ազգանունը:

### *ԵՐԿՈՒ ԹԻՎ*

Այն ի՞նչ երկու ամբողջ թվեր են, որոնց բազմապատկումից ստացվում է այնքան, ինչքան գումարումից:



## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ




**„ПИОНЕР“**

№ 11

ЖУРНАЛ ДЛЯ ПИОНЕРОВ И ШКОЛЬНИКОВ

Орган ЦК ЛКСМ Армении

Год издания 23-ий, ноябрь, 1951 г. Ереван





*Հասցեն՝ Երևան, Մարքսի փողոց № 21, հեռախոսներ՝ 2—44—83, 2—59—06*

*ՎՖ 05593, Պատվեր 615. Տիրաժ 5000. Տպագրական 2 1/4 մամուլ. Ստորագրված է տպագրության 13/XI—51 թ.*

*Հայպոլիգրաֆհրատվարչության № 1 տպարան, Երևան, Ալավերդյան փ. № 65, 1951 թ.*

# 1951 ՄԵՐ ՕՐԱՑՈՒՅՑԸ

## ՉԱՅԿԱ

Գերմանացիները չէին կարողանում նրան բռնել: Նա անհայտանում էր թռչնի նման: Ժողովուրդը նրան թռչնի անունով էլ կոչում էր՝ Չայկա:

«Մեր Չայկան եկավ» ասում էին գյուղացիները և վտանգի ենթարկելով իրենց կյանքը՝ թաքցնում նրան



ֆաշիստներից: Իսկ Չայկան Լիզա Չայկինան էր, անվեհեր պարտիզանուհին, որը օկուպացիայի մեջ գտնվող գյուղացիներին հասցնում էր մեր պարտիայի խոսքը՝ ճշմարտությունը:

Լիզա Չայկինան ծնվել է Վելիկիե Լուկիի մարզի Ռունո գյուղում: Իրենց գյուղում նա առաջին կոմերիտուհին էր և կազմակերպեց առաջին պիոներական ջոկատը:

Երբ գերմանացիները հարձակվեցին մեր Հայրենիքի վրա, Լիզա Չայկինան շատերի հետ պարտիզան դարձավ: Նա պարտիզանական ջոկատի հետախույզ էր:

Գերմանացիները նրան բռնեցին այն ժամանակ, երբ Լիզան շրջում էր գյուղից գյուղ և գյուղացիների մոտ կարդում ընկեր Ստալինի զեկուցումը Հոկտեմբերյան ռևոլյուցիայի 24-րդ տարեդարձի մասին:

Նրան տանջեցին, խոշտանգեցին, բայց Լիզան ոչինչ չասաց դահիճներին: Նա խոսեց միայն մահապատժից առաջ. «Ես մեռնում եմ հանուն հաղթանակի, հանուն մեր պարտիայի, հանուն Ստալինի»:

Լիզա Չայկինային հետմահու շնորհվեց Սովետական Միության Հերոսի կոչում:

## ՄԵՐ ԶՈՅԱՆ

Նա ոչ միայն ռուս ժողովրդի, այլ ամբողջ սովետական ժողովրդի դուստրն է, Լենինյան կոմերիտմիության դուստրը»: Այսպես է ասել Մ. Ի. Կալինինը Զոյա Կոսմոդեմյանսկայայի մասին:

Զոյան ջոկատում ակտիվ պիոներ էր, սիրված ընկեր և խելացի ղեկավար: Նա դասարանից դասարան էր փոխադրվում միայն հինգերով: 15 տարեկան հասակում Զոյան մտավ կոմերիտմիության մեջ: Կոմերիտմիությունը նրան դաստիարակեց մեր մեծ Հայրենիքին, Լենինի և



Ստալինի մեծ գործին նվիրվածության ոգով:

Հայրենական պատերազմի սկզբին Զոյան մի խումբ կոմերիտականների հետ գնաց պաշտպանական ամրություններ կառուցելու, որից հետո մտավ պարտիզանական ջոկատ:

Ջոկատում Զոյան կատարում էր բարդ և պատասխանատու հանձնարարություններ:

Մի անգամ Պետրիշչևո գյուղում խիզախ պարտիզանուհին այրեց գերմանացիների կողմից զբաղեցրած շենքերը: Երկու օր հետո Զոյային գերմանացիները բռնեցին: Նրան հարցաքննության ենթարկեց ֆաշիստ սպան: Չնայած գազանային խոշտանգումներին, Զոյան ոչ մի բառ չասաց ֆաշիստական ճիվաղներին:

Նոյեմբերի 29-ին Զոյային կախեցին: Նա մեռավ բացագանչելով «Ստալինը մեզ հետ է, Ստալինը կգա»:

Մահից հետո սովետական խիզախ պարտիզանուհուն շնորհվեց Սովետական Միության Հերոսի կոչում:

## ԱԼԵՔՍԱՆԴՐ ՍՊԵՆԴԻԱՐՈՎ

Ալեքսանդր Սպենդիարովը ծնվել է 1871 թվականին Կախովկայում: Դեռ փոքր հասակից նա բուռն կերպով սիրում է երաժշտությունը: Յոթ տարեկան հասակում նա արդեն հորինում է փոքրիկ վալսեր ու երգեր: Հետագայում սովորելով ռուս մեծ կոմպոզիտոր Ռիմսկի-Կորսակովի մոտ, Սպենդիարովը կատարելագործում է իր երաժշտական արվեստը: Նա բազմաթիվ ռոմանսներ, վալսեր ու երգեր է գրել: Շատ է գրել նաև սիմֆոնիկ ստեղծագործություններ: Նրա «Երեք արմավենի», «Ղրիմի էսքիզներ», «Երևանի էտյուդներ» և ուրիշ ստեղծագործությունները բոլորի կողմից սիրված գործեր են:

Սպենդիարովի ստեղծագործությունների գագաթնակետն է հանդի-



սանում հանրահայտ «Ալմաստ» օպերան, որն առաջին անգամ բեմադրվել է Մոսկվայի Մեծ թատրոնի ֆիլիալի բեմում:

Ալեքսանդր Սպենդիարովը խոշորագույն հայ կոմպոզիտոր է: Նա մեծ դեր է խաղացել հայ երաժշտության զարգացման գործում:

Սպենդիարովը միշտ օգտագործել է ժողովրդական երաժշտությունը: Նրա ստեղծագործությունները մոտ են ժողովրդի սրտին:

Նոյեմբերի մեկին լրացավ Սպենդիարովի ծննդյան 80 տարին: Նա մահացել է 1928 թվականի մայիսին Երևանում:

ԳԻՆԸ 2 Ռ.



Մոսկվա։ Սմոլենսկի հրապարակում կառուցվող բազմահարկ շենքը։

(ՏԱՍՍ)